Մուշեղյան, Ալբերտ (2012) «*Ագաթանգեղոսի պատմությունը*», *ստեղծման հանգամանքները, գրության ժամանակը և հեղինակի հարցը.* Պատմա-բանասիրական հանդես, № 1 . pp. 196-222.
ISSN 0135-0536

ՔՆՆԱՐԿՈՒՄՆԵՐ ОБСУЖДЕНИЯ

# «ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ», ՍՏԵՂԾՄԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ, ԳՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ ԵՎ ՀԵՂԻՆԱԿԻ ՀԱՐՑԸ

ԱԼԲԵՐՏ ՄՈՒՇԵՂՅԱՆ

## Ո՞Վ Է ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԸ

*Ագաթանգեղոսի Պատմության*[1] *գրության ժամանակը դնելով 461–465 թվերին՝ Ստ. Մալխասյանցը նշում է. «Գրիգոր Լուսավորիչը իր վսեմ կերպարանքով, իբրև խոստովանող, իբրև Հայաստանի լուսավորիչ և առաջին կաթողիկոս, առաջին անգամ ստեղծվել է Ագաթանգեղոսի անունը կրող լեգենդար պատմության մեջ, իսկ մինչ այդ, մոտ 180 տարի, նրա անձնավորությունը մնացած է եղել մթության մեջ»*[2]*: Գրեթե չորս տասնամյակ անց նույն կարծիքն է հայտնում և պատմագիտության դոկտոր Ա. Մարտիրոսյանը. «Լուսավորչի պաշտամունքը հայ Արշակունիների անկումից հետո միանգամից չսկսվեց, այլ միայն՝ V դարի վերջին տասնամյակներին»*[3]*:*

*Ստ. Մալխասյանցի այն պնդումը, թե Գրիգոր Լուսավորչի անձը 460-ական թվերից առաջ մոտ 180 տարի թաղված է եղել մթության մեջ, և նրա պաշտամունքն առաջ է եկել միայն V դ. վերջին, վկայում է, որ մեր կորովի հայագետը և նրան հետևողները բոլորովին ծանոթ չեն եղել դարասկզբին գոյություն ունեցած հայ եկեղեցական վավերագրերին, որոնք հիմնովին հերքում են նման կանխակալ պատկերացումները: Հակառակ Ստ. Մալխասյանցի և նրա համախոհների, պետք է նշել, որ Լուսավորչի պաշտամունքն ստեղծվել էր արդեն IV դ. ընթացքում՝ այդ Կաթողիկոսական Տան իշխանության ժամանակ և իր բարձրակետին հասավ V դ. սկզբին՝ հայ դպրության սկզբնավորման շրջանում, և Գրիգորն իր վսեմ կերպարանքով փայլատակեց ոչ թե 460-ական թվերին, այլ հենց V դ. առաջին քառորդում: «Հաճախապատում ճառեր»-ի յուրաքանչյուր վերտառության մեջ Գրիգորը մեծարվում է որպես «հայր մեր լուսաւորիչ»: Սահակ Պարթևին վերագրվող «Գիր աւանդութեան» գրվածքում, որ հավանորեն թարգմանված է հունարենից և որի մեջ նորադարձ քրմերի որդիների ու Գրիգոր Լուսավորչի միջև հարցուպատասխանի ձևով սահմանվում են նոր հավատին սպասավորելու համար հատկացվող ապրուստի միջոցները, հայոց դարձի ռահվիրան կոչված է «սուրբ լուսաւորիչն Հայոց Մեծն*

[1] *Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց (այսուհետև՝ Ագաթ.), աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Կանայեանց, Տփղիս, 1909:*

[2] *Փ ա վ ս տ ո ս  Բ ու զ ա ն դ. Պատմություն Հայոց, ներածություն, Երևան, 1968, էջ 36–37:*

[3] *Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն. Մաշտոց, Երևան, 1982, էջ 227–228:*

*Գրիգորիոս»*[4]*: Սահակ Պարթև կաթողիկոսի հեղինակած և 426 թ. Վաղարշապատի Եկեղեցական ժողովում հաստատված «Կանոնական Սահմանադրության» մեջ («Կանոնք սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի»)*[5] *Հայոց առաջին քահանայապետը և լուսավորիչը քանիցս մեծարվում է այնպիսի սրբազան պատվանուններով, ինչպես՝ «երիցս երանեալն քաջ նահատակն Քրիստոսի Գրիգորիոս» (կանոն ԼԸ), «առաքեալն եւ խոստովանողն Քրիստոսի եւ հայր վերստին նորոգման բոլոր Հայաստան աշխարհիս Գրիգորիոս» (կանոն Խ), «քաջ նահատակ տէր Գրիգոր» (կանոն ԽԴ): Ի դեպ, «երիցս երանեալ» պատճենված է հունարեն* τρίσμάκάριος *(լատ.* ter beatus*) մակդիրից, որ Հույն եկեղեցին շնորհել է քրիստոնեություն ընդունած առաջին կայսրին՝ Կոստանդիանոս Մեծին: Այսպես, տեսնում ենք, որ V դ. առաջին քառորդում, դեռևս նոր ստեղծվող հայ մատենագրության մեջ, Գրիգոր Լուսավորիչը ներկայանում է իր ամբողջ վսեմ կերպարանքով:*

*Մեր երկարամյա ուսումնասիրությունները և բնագրերի համեմատության արդյունքները բերում են այն հետևության, որ հայերեն Ագաթանգեղոսի Պատմությունն իր բառագանձով և ոճագրական դարձվածներով ամենից ավելի սերտ ընդհանրություններ ունի Սահակ Պարթև կաթողիկոսի «Գիր աւանդութեան» սպասահարկության հրահանգի, նրա իսկ հեղինակած Հայ եկեղեցու «Կանոնական Սահմանադրութեան», Կ.Պոլսի Պրոկղ եպիսկոպոսին Սահակի և Մաշտոցի դավանաբանական Թղթերի (431–435 թթ.), Գրիգոր Նազիանզացու ճառերի հայերեն թարգմանության (410–420 թթ.) և այդ շրջանի թարգմանական այլ երկերի հետ: Իբրև օրինակ բերենք հետևյալ ցայտուն համեմատությունները.*

*ա) «*Անդ էր այնուհետև *սրտալիր* ուրախութիւն*…Քանզի (ի ձեռն Գրիգորիոսի) յԱյրարատեան գաւառին, ի թագաւորանիստ կայեանսն,* բղխեցին Հայոց տանն Թորգոմայ *շնորհք քարոզութեան Աւետարանին» (Ագաթ., ▫ 775-776. այս և հաջորդ ընդգծումները մերն են –* Ա. Մ.*)*[6] *– «Քանզի սուրբ Լուսաւորիչն Հայոց Մեծն Գրիգորիոս ծնեալ վերստին գՀայաստանեա(յ)ցս աշխարհ* աւազանին *ծննդեամբ…և* լինէր ուրախութիւն *այնուհետև և խնդութիւն մեծ* յաշխարհիս Հայոց տանս Թորգոմայ*»*[7]*: Երկուսն էլ միատեսակ են նկարագրում նորամուտ քրիստոնեության առաջ բերած խանդավառությունը Հայաստանում:*

*բ) «Բայց մի ոմն ի նոցանէ (ի Հռիփսիմեանց)* ունէր արուեստ ապակագործութեան՝ *առնել ուլունս ապակեղէնս, և տալ գինս ընդ* կերակրոյ աւուրն պարենի ռոճկի*» (Ագաթ., 150) – քույրերի որդիք ասում են Տրդատ թագավորին և Գր. Լուսավորչին՝«և ոչ* ունիմք արուեստս գործականութեան *հնարից ինչ առ ի* պատրաստել նոքօք զպարէն ռոճկաց *մեզ և որդւոց մերոց» («Գիր աւանդ.», էջ 129):*

---

[4] *Սրբոյն Սահակայ Գիր աւանդութեան՝ յաղագս կարգի սպասաւորաց սրբոյ եկեղեցւոյ.– Սոփերք Հայկականք, հ. Բ, Վենետիկ, 1853, էջ 127:*

[5] *Կանոնագիրք Հայոց, հ. Ա, աշխատությամբ Վ. Հակոբյանի, Երևան, 1964, էջ 363–421:*

[6] *Ագաթ., էջ 1:*

[7] *Սոփերք Հայկականք, հ. Բ, «Գիր աւանդ.», էջ 127:*

*Ագաթանգեղոսի Պատմությունն իր շատ դրվագներով և, հատկապես, կանոնական և օրինադիր հրահանգներով արտացոլված է հենց Սահակ Պարթևի «Կանոնական Սահմանադրության» տարբեր հոդվածներում:*

*գ) «Ի բռնութենէ* հարկապահանջ իշխանացն*» (Ագաթ., Յօրբն., □6) «Ազատ յամենայն* հարկապահանջ իշխանաց*» (Կանոն ԼԸ, էջ 395):*

*դ) «Եւ անդէն (Գրիգորիոս) բարձր* քաղաքորմով փակեաւ *զտեղին ի պատիւ (նկատի ունի ապագա Էջմիածնի Մայր տաճարը* – Ա. Մ.*)» (Ագաթ., □770), «այլ (Գրիգորիոս) լոկ* պարսպէր քաղաքորմով *զտեղիսն (եկեղեցեաց)» (Ագաթ., □782) – հետևելով Ս.Գրիգորին, Սահակ Պարթև կաթողիկոսը սահմանում է՝ «զտաճարս աղաւթիցն…* պարսպեալ եղիցի քաղաքորմովք *(տպ. քաղաք որմովք)» (Կանոն Բ, էջ 368):*

*ե) Տրդատ թագավորը հրաման է տալիս՝ «բազմութիւն մատաղ մանկտւոյ ածել* յարուեստ դպրութեան… *գումարել* յարժանաւոր տեղիս դասս դասս*» (Ագաթ., □840). ըստ այսմ Սահակ Պարթևը հրահանգում է՝ «Վասն որոյ եւ անհատ պարտի պահել յարդարուն* զդպրոցսն ի վանս եւ յայլ արժանաւոր տեղիս*» (Կանոն Ժ, էջ 372):*

*զ) «Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց (Գրիգորիոս) ի տօն մեծ հռչակել… Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու և սրբոյ վկային Աստուծոյ Աթանագինէի՝ յայնմ աւուր խմբեալ ի նմին յաւանին տօնեսցեն» (Ագաթ., □836) – «Տաւն սրբոյն Յովհաննու Մկրտչի եւ վկայի (Աթանագինէի* – Ա. Մ.*), զոր նախակարգեաց առաքեալն եւ խոստուանողն Քրիստոսի…Գրիգորիոս՝ ի վանս, զի ուխտադրութեան պահաւք հաստատեցաւ» (Կանոն Խ, էջ 397): Ագաթանգեղոսի Պատմության մեջ կա ոչ միայն այս տոնի սահմանումը, այլև հիշատակություն «ուխտադրութեան պահք»-ի մասին, երբ Գրիգորիոսը Հովհաննես Մկրտչի ու Աթանագինես վկայի նշխարներն ամփոփելով նոր հիմնած եկեղեցում՝ յոթ օր դադար առավ հոգևոր մխիթարության համար Եփրատ (Արածանի) գետի ափին, որտեղ մկրտում էր հայ ժողովրդին (Ագաթ., □835), ճիշտ ինչպես Եզեկիել մարգարեն յոթ օր դադար առավ Քոբար գետի ափին (Եզեկ., Գ, 15): Սահակ Պարթևը «ուխտադրութեան պահք»-ով, ըստ իս, ակնարկում է Ս. Գրիգորի հենց այս յոթնօրյա դադարը «վասն հոգևոր մխիթարութեան», որից հետո էլ հաստատվեց բերված սրբերի հիշատակի տոնը: «Ուխտադրութեան», հավանաբար, աղավաղված է «մխիթարութեան» բառից. սրա վկայությունն է նաև երկու բառերի մեջ հավասար թվով հնչյունների շարքում «խ» և «ր» տառերի զուգադիպումը, որի պատճառով դժվարընթեռնելի ձեռագրում հնարավոր է այդպիսի տարընթերցում: Հունարեն Ագաթանգեղոսը ևս այստեղ ունի «մխիթարութիւն* παράκλησιν*»*[8]*: Անկասկած, Ս.Գրիգորի մխիթարության յոթնօրյա պահքը Արածանի գետի ափին՝ Հովհաննես Մկրտչի և Աթանագինես վկայի հիշատակի առթիվ՝ Սահակ Պարթևը Ագաթանգեղոսի Պատմությունից է մուծել իր «Կանոնական Սահմանադրության» մեջ՝ որպես Սուրբ Գրիգորից սահմանված պահք:*

*է) Պրոկղին ուղղված Սահակի և Մաժդոցի Թղթերում նույնպես առկա են Ագաթանգեղոսի Պատմությանը բնորոշ դարձվածներ.*

[8] La Version Grecque Ancienne du Livre Armenien d'Agathange edition Critique par G. Lafontaine. Louvain, 1973, p. 320, § 149.

| *Ագաթ., 777* | *Թուղթ առ Պրոկղ*[9] |
|---|---|
| *«Առնոյր այնուհետև (Գրիգոր) խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին...քակել, կործանել, բառնալ* զգայթակղութիւնսն ի միջոյ, ի բաց կորուսանել. *զի մի՛ ումեք լիցի* խէթ և խութ *այնուհետև* ընդ ոտս *անկանել և խափան առնել»:* | *«Ապա թէ իցէ ժաման(ակ)եալ (ուղղում եմ՝ ժամանեալ-Ա.Մ.) ի ժանգոյ աղտեղութեան, ի հարկէ* ջան լիցի մեզ խզել զխոչն, և զգայթակղութիւն զայն ի միջոյ ի բաց կորուսանել»: |
| *Ագաթ., □720* | *Թուղթ առ Պրոկղ*[10] |
| *«Եւ վկայքս այս լինիցին ձեզ ողորմութեամբ նորա (Աստուծոյ)* բերդ ամուր և աշտարակ հզօր ամրութեան»: | *«Քաղցրացեալ էր մեզ կալ մնալ աստէն ի սմին ընտանեցեալ տգիտութեան, որպէս* ի բերդ ինչ ամուր և աշտարակ հզօր *փախստեայ անկեալք յանգիտութեանս»:* |

*ը) Ըստ հայերեն Ագաթանգեղոսի (□837)՝ Տրդատ թագավորն իր իշխանության մեջ առհասարակ նշանակեց «չորս չորս հողս երդոյ» բոլոր ագարակ տեղերում, իսկ ավաններում՝ «եօթն եօթն հողս երդոյ» ի ծառայություն սպասավորության քահանաների, որպես նվեր պտղի՝ Տիրոջը մատուցելու համար: Բուզանդի Պատմության մեջ ասված է, թե «Պապ թագավորը եկեղեցուց կտրեց այն հողը, որ Գրիգոր մեծ քահանայապետի ժամանակ տվել էր Տրդատ թագավորը Հայոց բոլոր աշխարհում Եկեղեցու սպասավորության ու պաշտամունքի համար, որովհետև յոթը հողից հինգը կտրում էր հօգուտ արքունիքի և միայն երկու հող էր թողնում» – «Պապ թագաւոր զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց: Զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և զերկուսն միայն թողոյր (երկու հող երդոյ –* Ա. Մ.*)»*[11]*: Մ.Գրիգորի հունարեն Վարքում Տրդատ թագավորը «յուրաքանչյուր մեծ գյուղում առանձնացնում էր հինգ հող երդոյ, իսկ փոքր գյուղերում՝ երեք, որպեսզի նշանակված քահանաները միջոցներ ունենան եկեղեցիների վերականգնման և իրենց ապրուստի համար»*[12]*: Իսկ Սահակ Պարթևի «Կանոնական Սահմանադրության» մեջ սահմանվում է (հոդված ԺԹ)՝ «եւ գլխաւոր քահանայ*

---

[9] *Գիրք Թղթոց, էջ 148:*

[10] *Գիրք Թղթոց, էջ 138:*

[11] *Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց. բնագիրը՝ Ք. Պատկանյանի, Երևան, 1987, Ե, ԼԱ, էջ 352–353:*

[12] G. G a r i t t e. Documents pour l'étude du livre d'Agathange, Citta del Vaticano, MCMXLVI (1946) , §191. *Ագաթանգեղոսի Պատմության հունական նորահայտ խմբագրություն (Հունարեն Վարք). թարգմ. հուն. բնագրից Հ. Բարթիկյանի, առաջաբան և ծանոթ. Ա. Տեր-Ղևոնդյանի (այսուհետև՝ Հունարեն Վարք).– Հ. Բ ա ր թ ի կ յ ա ն. Հայ-բյուզանդական հետազոտություններ, հ. I, հայերեն հոդվածներ, Երևան, 2002, էջ 180:*

վասն հանապազորդ յեկեղեցւոջ ի գործ կալ՝ Բ երդ (երկու հող երդոյ – Ա. Մ.) աւելի առցէ քան իւր ընկերս, թէ գեաւղ մեծ իցէ»[13]: Նշանակում է Սահակ Պարթևի ԺԹ կանոնի հիմքը Ս.Գրիգորի հունարեն Վարքն է, որի մեջ մեծ գյուղի քահանային հատկացվում էր հինգ երդ (երկու երդ ավելի), իսկ փոքր գյուղի քահանային՝ երեք:

Այս համեմատությունները կարելի է շարունակել, բայց բերվածն էլ բավական է՝ հստակ հետևության հանգելու համար: Սահակ Պարթևի «Գիր աւանդութեան» հրահանգում և կանոններում հանդիպում ենք ոչ միայն Ագաթանգեղոսին հատուկ ոճերի ու դարձվածների կրկնության, այլև պատմական այնպիսի փաստերի, որոնք պարզապես Ագաթանգեղոսի Պատմության բովանդակային ատաղձի բեկորներն են: Այնպիսի տպավորություն է ստացվում, որ այդ կանոնները շարադրվել են Ագաթանգեղոսի Պատմությունն ընթերցելուց հետո կամ, որ ավելի հավանական է, այդ երկու գործերը միևնույն հեղինակի գրչի արգասիքն են: Մենք հակված ենք այս երկրորդ ենթադրությանը: Սահակ Պարթևն է Ագաթանգեղոսի Ա և Գ գրքերի հեղինակը, որոնք միասին կազմում են Գրիգոր Լուսավորչի Վարքը և պետք է գրված լինեն 410-ական թվերին՝ դեռ IV դարում ստեղծված Ս.Գրիգորի «Պատմութիւն Ագաթանգեղեայ» վերնագրով հունարեն Վարքի հիման վրա և ձոխացվել են հայկական միջավայրում սնված կենդանի ավանդություններով:

Գիրքը սկսվում է Առաջաբանով՝ «Յառաջաբան Ագաթանգեղեայ Պատմութեան» վերնագրով[14] (□1-17), իսկ բուն Պատմությունը սկսվում է □18-ից և վերնագրված է՝ «Ագաթանգեղեայ Պատմութիւն. Վարք և Պատմութիւն սրբոյն Գրիգորի»[15]: Վերջին դեպքում՝ կրկնակի վերնագրով հեղինակն ակնհայտ դիտել է տալիս ընթերցողին, որ «Ագաթանգեղեայ Պատմութիւն» նույն իմաստն ունի, ինչ որ «Պատմութիւն սրբոյն Գրիգորի»: Այստեղից պետք է եզրակացնել, որ IV դ. առաջին կեսին ստեղծված հունարեն Պատմության հեղինակը Ագաթանգեղոս անունով կամ մականունով նկատի ունի հենց Ս.Գրիգորին՝ Հայոց Լուսավորչին: Ըստ այսմ՝ «Ագաթանգեղեայ Պատմութիւն», որ գործածված է երկու անգամ Առաջաբանի և բուն Պատմության վերտառության մեջ, նշանակում է ոչ թե «Ագաթանգեղոսի գրած Պատմություն», այլ «Ագաթանգեղոսի վերաբերյալ Պատմություն»: Ագաթանգեղոսը, ուրեմն, հեղինակի հղացմամբ ինքը՝ Գրիգոր Լուսավորիչն է՝ նրան տրված հունարեն պատվանունը, որ թարգմանվում է «բարի հրեշտակ» կամ «բարի լրաբեր», մեկ բառով՝ «ավետաբեր»: Այս մտքով էլ Առաջաբանի 16-ում հեղինակն ասում է. «ընթերցելով Մատյանը՝ գալիք սերունդները կտեղեկանան Մեր Թորգոմա ազգին, մեր Հայաստան աշխարհին Ավետարանի աստվածապարգև ավետիքները, կյանքի խոսքը քարոզելու մասին» – «զԹորգոմայ ազգիս, զՀայաստան աշխարհիս զաստուածապարգև աւետեացն աւետարանին քարոզելոյ բանին կենաց»[16]: Ս.Գրիգորի քարոզած այս «Ավետարանի ավետիքները» հիշատակվում են

[13] Կանոնագիրք Հայոց, հ. Ա, էջ 378:

[14] Ագաթ., էջ 1:

[15] Ագաթ., էջ 15:

[16] Ագաթ., էջ 12–13:

*Ագաթանգեղոսի Պատմության Գ գրքի 725-ում և 789-ում: Կնշանակի, այդ ավետիքները Հայաստան բերողը ինքը՝ Գրիգորն է, որի համար էլ կոչվել է «Աւետաբեր» – հունարեն՝ Ագաթանգեղոս (*Ἀγαθάγγελος*): Մի այլ տեղ էլ, Առաջաբանում, հեղինակը Ս.Գրիգորին անվանում է «Վարդապետութեանն Քրիստոսի պատգամաւոր (իմա՝ պատգամաբեր –* Ա. Մ.*)» (13): Հարկ է նկատի առնել, որ «աւետիք» և «պատգամ» Ագաթանգեղոսում գործածվում են նույն իմաստով՝ «զի և շնորհեսցին* պատգամք Աւետարանի *քոյ այսմ (Հայոց) աշխարհի. զի և սոքա ծանիցեն զքեզ…» (□95), «ծանօթս աւետարանական* աւետեացն*, յարդարեալս ընդելս կացուցանէր (Գրիգորիոս)» (□789) և «ամենեցուն... հոգեպատում* պատգամացն *ընդելս և ծանօթս կացուցանէր (Գրիգորիոս)» (723): Ըստ այսմ, հայերեն Ագաթանգեղոսի հեղինակ Սահակ Պարթևը «Ագաթանգեղոս» անվան տակ ճանաչել է Գրիգոր Լուսավորչին, որով հերքվում է* Ագաթանգեղոս *անունով պատմագրի գոյությունը թե՛ անցյալում՝ Տրդատ թագավորի օրոք և թե՛ Սահակի ու Մաշտոցի աշակերտների շրջանում: Ուստի և հունարենից Սահակ Պարթևի թարգմանած, մասամբ էլ լրացրած Առաջաբանում Տրդատ թագավորի քարտուղարը և ժամանակագիրը չէր կարող Ագաթանգեղոս կոչվել:*

*430-ական թվերին, երբ Սահակ Պարթևը հեռացվել էր կաթողիկոսությունից, Պարսից արքունիքի հովանավորությամբ Հայ եկեղեցու կաթողիկոսական աթոռին հաջորդաբար տիրացան ասորի Նեստորական անօրեն եպիսկոպոսներ Բրքիշոն և Շամուելը, որոնք նախ ճգնում էին նսեմացնել Գրիգոր Լուսավորչի հեղինակությունը, ապա դավանաբանական պատրվակով հասան այն բանին, որ քանի դեռ աստվածային տեսիլքով չեն հայտնվել Գրիգոր Լուսավորչի նշխարները, պետք է դադարեցնել նրա պաշտամունքը և արգելել նրան փառաբանող Ագաթանգեղոսի Պատմությունը*[17]*: Սրանով պետք է բացատրել, որ 440-ից մինչև 475 թվականը հանդես եկած հայ մատենագիրների և պատմիչների (Եզնիկ Կողբացի, Կորյուն, Եղիշե և այլք) երկերում չի հիշատակվում Գրիգոր Լուսավորչի անունը, չնայած որ նրանք բոլորն էլ իրենց երկերում առատորեն օգտվել են Ագաթանգեղոսի Պատմության շարադրանքից և ոճերից:*

*Սակայն, մի բան է անունն իմանալը, մի այլ բան՝ Լուսավորչի անունն ու գործը Մատյաններում հիշատակելն ու պանծացնելը: Գրիգորի անունը տվյալ շրջանում եղել է խորհրդապաշտական արգելքի տակ՝ մինչև նշխարների հայտնվելը: Արգելքը տևել է, ըստ Սահակ Պարթևի տեսիլքի, երեքուկես տասնամյակ՝ «երեք տասներեակք ամաց և կէս տասներեկի»*[18]*, սկսած 439 թ.՝ Սահակ Պարթևի մահով և ավարտվել 474 թ. Զենոն կայսեր գահակալության (474–491 թթ.) առաջին տարում, երբ Գառնիկ ճգնավորին երևացած տեսիլքով հայտնվեցին Սուրբ Գրիգորի նշխարները: Այդ աստվածատուր շնորհով էլ վերջ գտավ Գրիգոր Լուսավորչի պաշտամունքի*

---

[17] *Տե՛ս Ա. Մ ու շ ե ղ յ ա ն. Գրիգոր Լուսավորչի անվան շուրջ եղած խորհրդավոր լռությունը V դարի կեսերի հայ մատենագիրների երկերում.– «Քրիստոնյա Հայաստան» (Էջմիածին), 2012, հունվար, Բ. փետրվար, Ա և Բ. մարտ, Ա և Բ (շարունակելի):*

[18] *Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց եւ թուղթ առ Վահան Մամիկոնեան (այսուհետև՝ Փարպ.), աշխատութեամբ Գ. Տէր-Մկրչեան եւ Ստ. Մալխասեան, Տփղիս, 1904, Տեսիլ Սահակայ եւ Մեկնութիւն տեսլեանն, Ա դրուագ, ԺԷ, էջ 33:*

*և նրան փառաբանող Ագաթանգեղոսի Պատմության վրա դրված «խորհրդապաշտական» արգելքը: Գյուտ կաթողիկոսն ու Փավստոս Բուզանդն առաջինն էին, որ V դ. երկրորդ կեսին վերականգնեցին Ս.Գրիգորի անունը հայ մատենագրության մեջ: Թեև նրանք բազմաթիվ քաղումներ են անում Ագաթանգեղոսի Պատմությունից, այսուհանդերձ նրա հեղինակին չեն անվանում «Ագաթանգեղոս»: Հավանորեն դրանից հետո է, որ արտագրող գրիչները «Ագաթանգեղեայ Պատմութիւն» վերնագիրը ընկալել են որպես «Ագաթանգեղոսի գրած Պատմություն»: Այդպես, վերստին հրապարակ եկած Պատմության վերնագրից «Ագաթանգեղոս» անունը մուծվել է նրա Առաջաբանի մեջ, որպես Պատմության հեղինակի անուն: Սույն կասկածելի հավելման մասին է վկայում այն, որ ձեռագրերի մեծ մասում Պատմության Առաջաբանում ենթադրյալ հեղինակն ինքն իրեն անորոշ դերբայով անվանում է* ոմն Ագաթանգեղոս. *«Արդ՝ հրաման հասեալ առ իս ոմն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ...»*[19] *(□12): Ոչ մի հեղինակ՝ հնում, թե հիմա, իր մասին խոսելիս չի գրում. «Ես, ոմն այսինչս»: Համեմատության համար բերեմ մի քանի օրինակ. Փարպեցին գրում է. «հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի»*[20]*: Եղիշեն իր մասին գրում է նախաբանում՝ առանց իր անունը հիշելու. «Զբանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի, ո՛վ քաջ»*[21]*: Հովհան Մամիկոնյանը գրում է հիշատակարանում՝ «Ես՝ Յովհան Մամիկոնեան եպիսկոպոս», և ապա՝ «Դարձեալ ես՝ Յովհաննէս Մամիկոնեան եպիսկոպոս»*[22]*: Կարելի է կարծել, թե V դարում կամ դրանից հետո մատենագիրների մեջ իսկապես տարակուսանք է ծագել Ագաթանգեղոս Պատմիչի գոյության վերաբերյալ:*

*Միանգամայն անտեղի է Ստ. Մալխասյանցի վարկածը, իբր Ագաթանգեղոս եղել է այդ Պատմությունը ստեղծող Գյուտ կաթողիկոսի (461 – 478 թթ.) ծածկանունը: «Նշանակալից է,– գրում է նա,– որ այս գրվածքը երևան է գալիս հենց Գյուտ կաթողիկոսի ժամանակ, որ հայրապետական աթոռը գրավում է տասը տարի, 461 – 471 թվականներին: Գյուտը, ինչպես ինքը հայտնում է, ուսում էր առել Բյուզանդիոնում և շարունակ թղթակցություն ուներ այնտեղի իր ծանոթների հետ. լավ հմուտ էր հայերեն և հունարեն լեզուներին, ինչպես վկայում է Ղազար Փարպեցին. հունասիրության մեջ մեղադրվելով՝ պարսից թագավորի հրամանով հրաժարեցրած էր կաթողիկոսական պաշտոնից: Նա հայտնի է նաև իբրև հայոց եկեղեցու ժամերգությունը բարեկարգող ու ճոխացնող. նրա անունը միշտ մակագրվում է մեր ժամագիրների վրա՝ Հոհան Մանդակունու հետ միասին: Շատ հավանական է, որ հենց Գյուտ կաթողիկոսն էլ եղած լինի Ագաթանգեղոսի անունը կրող Պատմության իսկական հեղինակը: Եթե այս Պատմությունն ունեցել է մի հեղինակ, ինչու՞ այս հեղինակը չէր կարող լինել Գյուտ կաթողիկոսը, որ թե՛ գիտական պատրաստությամբ, թե՛*

---

[19] *Ագաթ., էջ 9:*

[20] *Փարպ., գլուխ Դ, էջ 14:*

[21] *Եղիշէի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին, ի լոյս ածեալ բաղդատութեամբ ձեռագրաց աշխատութեամբ Ե. Տէր-Մինասեան, Երևան, 1957, էջ 3:*

[22] *Յովհան Մամիկոնեան. Պատմութիւն Տարօնոյ. աշխատութեամբ եւ առաջաբանով պատմական գիտությունների թեկնածու Աշ. Աբրահամյանի, Երևան, 1941, էջ 289:*

*հունասիրությամբ, թե՛ եկեղեցական-գրական պարապմունքով և թե՛ իր ապրած ժամանակով շատ լավ հարմարում է այս ենթադրությանը: Ագաթանգեղոսի Պատմության երևան գալը մի խոշոր հարված էր ասորական հոծ և ուժեղ խմբի համար: Սրանք լուռ չմնացին և իրենց կողմից փորձեցին մի հակահարված հասցնել հունասերների խմբին, ստեղծելով մի ուրիշ պատմություն հայոց դարձին ի քրիստոնեություն, որ ասորական ծագում ունենար և իր փայլով նսեմացներ հույն Գրիգորի փայլը: Այս մտադրությունն իրագործելու նպատակով, նախ նրանք ասորերենից թարգմանեցին Լաբուբնայի (Խորենացու Ղերուբնայի)*[23] *Պատմությունը...»*[24]*:*

*Ուշագրավ է այս կապակցությամբ Հ. Աճառյանի սրամիտ դիտողությունը, որ նա 10 հարցերի թվում ներկայացրել է Ստ. Մալխասյանցին 1945 թվականին. «Ուրեմն (Խորենացին) 40 տարեկան էր, երբ Ագաթանգեղոսը հնարեց Լուսավորչի առասպելը, և 45 տարեկան, երբ հնարվեց Աբգարի զրույցը: Արդ Խորենացին տեսել ու ապրել էր այդ խաբեբաների հետ. նա չէ՞ր բռնի նրանց օձիքից և չէ՞ր ասի. Ա՛յ խաբեբաներ, ինչու՞ ձեզանից այդպիսի սուտ ու մուտ բաներ եք հնարում... ու՞մ եք ուզում խաբել այդպիսի ստերով» և, ապա, շեշտելով Փարպեցու հիացմունքը երանելի այր Ագաթանգեղոսի Ստուգապատում Պատմության մասին ավելացնում է. «Այսպե՞ս պիտի խոսեր Փարպեցին, եթե Լուսավորչի պաշտամունքը և պատմությունն իր օրով սարքված մի «առասպել» լիներ»*[25]*: Մալխասյանցը, սրան ի պատասխան, արդարանում է նրանով, թե «Թեպետ (Խորենացին) իրոք ժամանակակից և մոտ ծանոթ էր Ագաթանգեղոսի Պատմության անհայտ հեղինակին, որ իմ կարծիքով Գյուտ կաթողիկոսն էր, բայց սա թաքցրել է յուր անունը և իր կեղծիքը վերագրել մտացածին Ագաթանգեղոսին»*[26]*: Այդ դեպքում բոլորովին հասկանալի չէ, թե ինչու՞ պետք է 460-ական թվերին կաթողիկոսական աթոռին նստած, այդպիսի արժեքավոր գործ ստեղծող հովվապետը հարկ համարեր քողարկվել նման կեղծանունով, հատկապես, եթե հաշվի առնենք, որ այդ ժամանակ՝ V դ. կեսերին հրապարակի վրա էին հայ դպրության և պատմագրության բոլոր նշանավոր դեմքերը՝ Եզնիկ Կողբացի, Դավիթ Անհաղթ, Կորյուն, Եղիշե, Փավստոսի Պատմության հայ հեղինակը, Խորենացի, Փարպեցի և ուրիշներ, ի՞նչ իմաստ ուներ, որ Գյուտ կաթողիկոսը նրանց բոլորի աչքի առաջ հանդես գար այդ ծածկանունով, իսկ Խորենացին ու Փարպեցին էլ, այդ կեղծիքին անտեղյակ, փառաբանեին մտացածին Ագաթանգեղոսին՝ առանց կասկածելու, որ դա իրենց դասընկեր կամ ժամանակակից Գյուտ կաթողիկոսն է:*

[23] *«Ղերուբնա» գրչական սխալ է, պետք է լինի «Ղեբուբնա»:*

[24] *Ս տ. Մ ա լ խ ա ս յ ա ն ց. Ժամանակագրական խնդիրներ Հայոց հին մատենագրության մեջ («Բանավոր զեկուցում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ընդհանուր ժողովի նիստում, 10 ապրիլի, 1944 թ.»).– ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1944, -6–7, էջ 7–24:*

[25] *Հ ր. Ա ճ ա ռ յ ա ն. Մեր առաջին պատմագրերի թվականը «Հայկականք Գ».– ԳԱ «Տեղեկագիր», 1945, -3–4, էջ 49, 50: Տե՛ս նաև Հ ր. Ա ճ ա ռ յ ա ն. Բանասիրական ուսումնասիրություններ, Երևան, 1976, էջ 201–206 և 234–236 (ծանոթագրություններ):*

[26] *Ս տ. Մ ա լ խ ա ս յ ա ն ց. Իմ պատասխանները.– ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», 1946, -11–12, էջ 3–8:*

*«Ագաթանգեղոսի Հայոց Պատմությունը և հին վրացերեն «Վասն հաւատոյ» դավանաբանական երկը» ուսումնասիրությամբ[27] արդեն ցույց ենք տվել, որ Ագաթանգեղոսի Պատմությունը պետք է գրված լինի ոչ թե V դ. երկրորդ կեսին, ինչպես ընդունված է հայագիտության մեջ, այլ 431 թ. Եփեսոսի Տիեզերական ժողովից առաջ, ավելի ճշգրիտ՝ 410-ական թվերին, երբ նրա մեջ մուծվեց Մեսրոպ Մաշտոցի համառոտ Աստվածաշունչը, որպես Ագաթանգեղոսի Պատմության երկրորդ գիրք՝ «Վարդապետութիւն սրբոյն Գրիգորի» վերտառությամբ: Այդ հրապարակումից շատ ավելի առաջ (1982 թ.) մենք նույն եզրակացությանն էինք հանգել «Կորյուն թե՞ Ագաթանգեղոս» ծավալուն անտիպ ուսումնասիրության մեջ՝ երկու երկերի բնագրական աղերսը քննելու ճանապարհով: Վերջին աշխատությունից մի հոդվածաշար հրապարակվեց ՀՀ ԳԱԱ «Գիտություն» պարբերաթերթում և «Լրաբեր հասարակական գիտությունների» ամսագրում[28], որտեղ բանասիրության մեջ առաջին անգամ Կորյունի և Ագաթանգեղոսի բնագրական փոխառնչության հարցը դիտարկվում է բոլորովին նոր տեսանկյունից՝ Ագաթանգեղոսի Առաջաբանի (□1-17) և բուն Պատմության աղերսի լուսաբանման հիման վրա: Իսկ Ագաթանգեղոսի «Դարձ փրկութեան» գրքում եղած կորյունյան հատվածների իսկական սկզբնաղբյուրը բացահայտելու համար, որպես բանասիրական հիմնահարցը լուծելու բացառիկ միջոց, օգտագործել ենք դավանաբանական այն հիմունքները, որոնք արծարծված են Գրիգոր Լուսավորչի Վարդապետության մեջ և որոնց հիման վրա էլ շարադրված է Ագաթանգեղոսի «Դարձ փրկութեան» գիրքը: Բնագրերի բաղդատումը կրկին հաստատում է մեր նախկին եզրակացությունը, որ Ագաթանգեղոսի Պատմությունն է Կորյունի մոտ նկատված բազմաթիվ նույնաբան հատվածների իրական սկզբնաղբյուրը:*

*Հասկանալի է՝ այս նոր եզրակացությունը Կորյունի և Ագաթանգեղոսի բնագրական առնչությունների վերաբերյալ լուրջ հակասության մեջ է մտնում այն բոլոր հետազոտողների տեսակետի հետ, որոնք Ագաթանգեղոսին են համարում Կորյունի «Վարք Մաշտոցի» երկի բանաքաղ: Ուստի, հարկ ենք համարում վերստին մանրակրկիտ անդրադառնալ երկու բնագրերի համեմատական քննությանը և դրա հետ ներկայացնել մեր եզրահանգումները Ագաթանգեղոսի Պատմության գրության ժամանակի և հեղինակի վերաբերյալ:*

«ՈՄՆ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ» ԵՎ ԴԱՎԻԹ ՀՌՈՎՄԱՅԵՑԻ

*V դ. հեղինակներից առաջինը Մովսես Խորենացին է, որ Գրիգոր Լուսավորչի Վարքի և Պատմության հեղինակ է ճանաչում Տրդատ թագավորի քարտուղար Ագաթանգեղոսին, որին դրվատանքով անվանում է մերթ «աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս»[29], մերթ էլ «քաջ քարտուղարն*

[27] *Տե՛ս ՀԽՍՀ ԳԱ «Լրաբեր հասարակական գիտությունների», 1987, - 4, էջ 62–81:*

[28] *Տե՛ս «Գիտություն», 1996, -4, 16 մարտի, -5, 25 մարտի, -6, 11 ապրիլի, ՀՀ ԳԱԱ «Լրաբեր հասարակական գիտությունների», 1996, -2, էջ 49–64:*

[29] *Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց (այսուհետև՝ Խոր.), աշխատութեամբ Մ. Աբեղեան եւ Ս. Յարութիւնեան, Տփղիս, 1913, Բ, ԿԷ, էջ 202:*

Ագաթանգեղոս»[30]: Ղազար Փարպեցին ևս հիացմունքով է հիշատակում Ագաթանգեղոսին՝ նրան անվանելով «այրն երանելի Ագաթանգեղոս», «երանելին Ագաթանգեղոս, այր բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հրահանգիւ, ստուգաբան» և «երանելի այրն Աստուծոյ սուրբն Ագաթանգեղոս»[31]:

Խորենացու «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց» գրվածքից տեղեկանում ենք, որ Հռիփսիմյան կույսերի մասին գրել է ոչ միայն Տրդատի քաջ քարտուղար Ագաթանգեղոսը, այլև Դավիթ Հռովմայեցին: Վերջինիս «Գիրք Եկլեսիաստէս»[32] ժողովածուն Խորենացին կարդացել է, թերևս նաև արտագրել երիտասարդ հասակում Հելլադացվոց Ատտիկեում, Ալեքսանդրիայից վերադառնալիս, և ցանկացել է թարգմանել, բայց չի հասցրել, այլ միայն ծեր և տկար տարիքում դրանից մի փոքր մաս փոխադրել է հայերեն. «Զատենաբանութիւնս իմաստնոց յելլադացւոց յԱտտիկէ իմ ընթերցեալ, բազում անգամ գտի զոմ գրոցս, որ ՚ի ճահ գայր պատմութեանս մերոյ հիւսման: Յոյժ պիտանի և յօգտութիւն մեզ լսի՝որ անուն գրոցն կոչի Դաւթի հռովմայեցւոյ գիրս եկլեսիաստէս. զոր կամեցեալ իմ թարգմանել, և ոչ ժամանեցի. մնաց այլում տեղւոյ և կամ իմաստնոյ: Զի ես մահկանացու գոլով, ծեր և հիւանդոտ, երկուցեալ ոչ հրեշտակ գոլով, կամ որդի բարձրելոյ, որպէս աստուածայինն ասէ բան, սակաւ մի երկրորդեցի ՚ի նոյն գրոցս, զոր քաջ քարտուղարն թողեալ Ագաթանգեղոս, որ և ոչ կարէր զամենայն զբանս և զգործս ՚ի միտսն ծովացուցանել, մնալով և այլոց ևս»[33]: Ըստ Խորենացու, ուրեմն, Տրդատի քարտուղար ենթադրյալ Ագաթանգեղոսն ամեն ինչ չէ, որ շարադրել է իր Հռիփսիմյանց Վկայաբանության մեջ և Խորենացին փորձել է Դավիթ Հռովմայեցու այդ շատ հետաքրքիր լատիներեն կամ հունարեն Գրքից լրացուցիչ տեղեկություններ հաղորդել Դիոկղետիանոս կայսեր հալածանքի պատճառով Հռոմից Հռիփսիմյան կույսերի փախուստի, մինչև Եգիպտոս ու Ալեքսանդրիա հասնելու և այնուհետև Երուսաղեմում տեսիլքով նրանց երևացած Աստվածածնի ցուցումով Հայաստան՝ Արարատյան երկիր ուղևորվելու ու այնտեղ արյամբ նահատակվելու մասին:

Դավիթ Հռովմայեցու «Եկլեսիաստէս» գրքում տեղ գտած Հռիփսիմյան կույսերի պատմության մեջ, որից մի հատված թարգմանել է Մովսես Խորենացին, հաղորդվում է, թե սքանչելատեսիլ Հռիփսիմեի հանդեպ Դիոկղետիանոս կայսեր վավաշոտ նկրտումների պատճառով Հռոմի Պողոս առաքյալի վանքի երեք հարյուր կույսերից ավելի քան յոթանասունը վանքի կույսերի մայր Գայանեի գլխավորությամբ փախչում են Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքը ու այնտեղից էլ Երուսաղեմ՝ սուրբ տեղերին

[30] Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց. Սրբոյ հօրն մերոյ Մովսիսի Խորենացւոյ Մատենագրութիւնք (այսուհետև՝ Խորենացւոյ Մատենագրութիւնք), Վենետիկ, 1865, էջ 298:

[31] Փարպ., Ա, էջ 6 և Բ, էջ 8 և 10:

[32] «Գիրք Եկլեսիաստէս» վերնագիրը Դավիթը վերցրել է Հին Կտակարանի հունարեն Septuaginta (Յոթանասնից) թարգմանության “Ecclesiastes” գրքից, որը Հին Կտակարանի հայերեն թարգմանության մեջ կոչված է «Գիրք Ժողովողի»: Ըստ նորագույն մեկնության «եկլեսիաստէս» կոչվում էր հին Հունաստանում այն ճարտասանը, որ հանդես էր գալիս ժողովրդական ժողովներում և փայլում էր իր պերճաբանությամբ:

[33] Խ ո ր ե ն ա ց ւ ո յ Մատենագրութիւնք, էջ 297–298:

*երկրպագելու: Եվ քանի որ կույս Հռիփսիմեն մանկությունից նվիրված էր Սուրբ Աստվածածնին իբրև աղախին, նրանք գալիս են Գեթսեմանի՝ Աստվածածնի գերեզմանին, հալածիչ թագավորներից փրկություն աղերսելու: Ամսօրյա ժամանակ անց, փախստական կույսերին տեսիլք է երևում, որով հրաման է տրվում գնալ ի Հայք, երկիրն Արարատյան, Թադեոս առաքյալի բաժինը. «Եւ Գայիանեայ իմացեալ հոգւոյ ակամբ, առեալ զնա փախչի յԵգիպտոս յԱղեքսանդրիա. և անտի եկանէ յԵրուսաղէմ երկրպագել (տպ. երկրպագեալ –* Ա. Մ.*) սրբոց տեղեացն որ անդ: Եւ երթեալք 'ի յայրն, աղօթս և պաղատանս մատուցանէին առաջի սրբուհւոյն, օգնել կուսին վտանգելոյ և փախուցելոյ, որ եղև նորա աղախին 'ի մանկութենէ: Եւ գնացեալ անտի 'ի Գեթսեմանի 'ի գերեզման Աստուածածնին... Եւ երկրպագելով Աստուածածնին և բազում արտասուս հեղեալ, մնալով անդ ամսօրեայ ժամանակաւ: Ապա տեսիլ երևեալ սրբոցն, և հրաման առեալ գնալ 'ի Հայք յերկիրն արարատեան 'ի բաժին Թադէոսի առաքելոյն: Եւ զպատկերն փայտեղէն որ եղեալ է յերեսս իմ յաւուր փոխման իմոյ, զնա խնդրեսջիք, կատարել (տպ. կատարեալ –* Ա. Մ.*) զընթացս ձեր արեամբ»*[34]*: Վերջին խոսքերից երևում է, որ հրաման տվողն Աստվածածինն է, որի փայտեղեն դիմապատկերը (իմա մահվան դիմակը) Բարդուղիմեոս առաքյալը բերել էր Հայաստան և դրել Անձնացյաց գավառում՝ իր հիմնած «Սուրբ Աստվածածին» փոքրիկ եկեղեցում:*

*Այսպես, Աստվածածնի հրահանգով սուրբ կույսերը գալիս են Հայաստան՝ Արարատյան երկիր, և Դարանաղի, Բզնունյաց, Մոկաց գավառներով հասնում Տմորիք: Այնուհետև, Դավիթ Հռովմայեցին այսպես է շարունակում Հռիփսիմյան կույսերի ճամփորդությունը Տմորյաց գավառից հետո, և այդ հատվածը Խորենացին օգտագործել է երկու տարբեր, բայց միանգամայն համարժեք թարգմանությամբ թե՛ «Պատմութիւն Սրբոց Հռիփսիմեանց» մեջ և թե՛ Սահակ Արծրունի իշխանին հղած Թղթում: Բերենք այդ հատվածները զուգադիր.*

| Խորենացի. Պատմութիւն Սրբոց Հռիփսիմեանց | Խորենացի. Թուղթ առ Սահակ Արծրունի |
|---|---|
| *«Եւ անտի (ի Տմորեաց գաւառէն –* Ա.Մ.*) փոխեալ եկանէն ի Հայաստան գաւառ*[35] *ի խորշ լերին Մշկունեաց... Եւ չուեալ անտի և կացեալ յեզր Բժնունեաց, կային անդ բազում աւուրս... Եւ ապա աստ այլք ի նոցանէ կացեալք. որ անուանի տեղին* Սուրբ Տիկին*: Եւ անտի յառաջ անցեալ ուստի հոսի գետն բովանդակ. որ փոքրագոյն չար ջուրքն հոսեալ ի լերանց* Կանգուարայ *[և միւս բերդին]*[37] | *«Եւ է տեղին այն յորում դևքն էին, լեռնամէջ վիմաց, ի վերայ գետոյն մեծի՝ որ կոչի Տիգրիս, հուպ ի բերդն ամուր որ կոչի Կանգուար, և* միւսոյն Ագռաւաց քար*, ուստի ջուրք բազումք հոսին ի լերանց ամրոցին ըստ գարնանային մասանցն, զան անցանեն ընդ հիմունս* տաճարի Տիրուհւոյն*[36], և խառնեալ օժանդակեն զգետն մեծ* |

[34] *Նույն տեղում, էջ 299:*
[35] *Նկատի ունի Հայոց ձոր գավառը Վանա ծովից հարավ-արևելք:*
[36] *Նույն «Սուրբ Տիկին» տաճարն է:*
[37] *Լրացնում ենք՝ ըստ զուգահեռ թարգմանության:*

*որ կոչի* Ագռաւաքար. *և զարնանային ուղխքն գետացեալ, զան յօժանդակութիւն գետոյն մեծի, որ կոչի Տիգրիս»*[38]*:*

*Տիգրիս: Անդ հիմնարկեալ սուրբ առաքեալն զհիմն տաճարի սրբուհւոյն իւրովք իսկ ձեռօքն, շինեալ եկեղեցի փոքրագոյն, և անուանեաց զնա Սուրբ Աստուածածին, և եդ ի նմա զպատկեր տիրուհւոյն»*[39]*:*

*Այս համանման նկարագրությունների զուգադրումից տեղեկանում ենք, որ «*Սուրբ Տիկին*» տաճարը Անձևացյաց գավառում Բարդուղիմեոս առաքյալի հիմնած «փոքրագոյն եկեղեցին» է, որ նա կոչել է* Սուրբ Աստվածածին *և այնտեղ դրել Երուսաղեմից իր հետ Հայաստան բերած Աստվածածնի փայտեղեն* փոխման պատկերը*:*

*Այստեղից գալիս ենք կարևոր հետևության. առաջին՝ Երուսաղեմի վերոհիշյալ տեսիլքում բերված Աստվածածնի հրահանգը Արարատյան երկիր տարված իր պատկերի մասին ակնհայտ վկայում է, որ Դավիթ Հոռվմայեցին քաջատեղյակ է Բարդուղիմեոս առաքյալի ձեռքով Աստվածածնի փայտեղեն պատկերը Անձևացյաց գավառ բերելու ավանդությանը, որը պատմում է Խորենացին՝ Սահակ Արծրունուն հղած Թղթում՝ փաստորեն, դա քաղելով Դավիթ Հոռվմայեցու «Եկլեսիաստէս» գրքից:*

*Երկրորդ կարևոր հետևությունը, որ կարելի է անել տեսիլքում հայտնված Աստվածածնի խոսքերից, այն է, որ Հռիփսիմյան կույսերը Հայաստան գալով՝ հենց այն պատճառով էլ գնում են Անձևացյաց գավառ, քանզի նախապես գիտեն, որ այստեղ գտնվող «Սուրբ Տիկին» տաճարում է դրված Աստվածածնի փայտեղեն պատկերը, որին էլ երկրպագելով նրանք տեղեկացան, թե որտեղ են ավարտելու* իրենց ընթացքը արյամբ, *ինչպես հրամայված էր նրանց տեսիլքում, այսինքն՝ որտեղ է լինելու նրանց նահատակությունը: Նշանակում է՝ Աստվածածնի փայտեղեն պատկերից էլ Հռիփսիմյան կույսերը ցուցում են ստացել՝* գնալ Հայոց արքայանիստ Վաղարշապատ նորաքաղաքը՝ այնտեղ նահատակվելու համար*:*

*Երրորդ հետևություն՝ «կատարել զընթացս ձեր արեամբ» խոսքը կասկած չի թողնում, որ Դավիթ Հոռվմայեցին ոչ միայն տեղյակ է Հռիփսիմյան կույսերի նահատակությանը Վաղարշապատում, այլև մանրամասն նկարագրել է այն իր գրքում, որից և օգտվել է հայերեն Ագաթանգեղոսի հեղինակը:*

*Դատելով ասվածից՝ Դավիթ Հոռվմայեցու «Գիրք Եկլեսիաստէս» կամ «Գիրք Ժողովողի» ժողովածուն պարունակել է Բարդուղիմեոս առաքյալի ձեռքով Աստվածածնի փոխման պատկերը Հայաստան բերելու ավանդությունը, Հռիփսիմյան կույսերի ամբողջական վկայաբանությունը, Ագաթանգեղոսի Պատմությունը, գուցե նաև Ոսկյանց և Սուքիասյանց վկայաբանությունները, որոնք պետք է, որ հատկապես հարազատ լինեին Մովսես*

[38] *Խ ո ր ե ն ա ց ւ ո յ Մատենագրութիւնք, էջ 300–301:*

[39] *Նույն տեղում, էջ 295:*

*Խորենացուն, քանի որ նրանցում խոսք է գնում Հայոց թագավոր Արտաշեսի և Սաթենիկ թագուհու մասին, որն Ալանաց ցեղի դուստրն էր*[40]*:*

*Խորենացու «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց»-ը և հայերեն Ագաթանգեղոսի Պատմությունը չափազանց կարևոր տվյալներ են պարունակում երկու ժամանակագիր հեղինակների և նրանց հաղորդումների նույնությունը բացահայտելու համար: Այդ հեղինակներից առաջինը Դավիթ Հռովմայեցին է, իսկ երկրորդը՝ Տրդատի քարտուղարը – պայմանաբար անվանենք նրան «ոմն Ագաթանգեղոս», ինչպես նշվում է Առաջաբանում (12) – իսկական Ագաթանգեղոսի՝ Գրիգոր Լուսավորչի հետ չշփոթելու համար:*

*ա) Նրանք երկուսն էլ Հռոմ քաղաքից են, երկուսն էլ ներկայանում են իբրև IV դ. սկզբին Հռոմում և Հայաստանում կատարված անցքերի ժամանակակիցներ ու վկաներ:*

*բ) Թե՛ Դավիթ Հռովմայեցին և թե՛ «ոմն Ագաթանգեղոսը» գրել են Հռիփսիմյան կույսերի պատմությունը, ընդ որում, ըստ Դավիթ Հռովմայեցու, Հռիփսիմյան կույսերն ապրում էին Հռոմի Պողոս առաքյալի վանքում՝ տեսուչ Գայանեի խնամքի տակ: Իսկ ըստ «ոմն Ագաթանգեղոսի» տեղեկության՝ կույսերը բնակվում էին «Հռոմի արգելավանքում՝ լեռներում մեկուսացած, ընդակեր (ընդեղենով սնվող), ժուժկալ, պարկեշտ և սրբանվեր կանայք էին՝ քրիստոնեական հավատքով լի: Նրանց գլխավորի անունն էր Գայանե» (Ագաթ., 138):*

*գ) Դավիթ Հռովմայեցին և ոմն Ագաթանգեղոսը միանման հաղորդում են Հռիփսիմեի թագավորական ծագման մասին. «՚ի նոյն թագաւորական տոհմէ գոլով սրբոյն, լինել Աւգոստոս կայսեր՝ ցեղապետ թագաւորաց... Յայսցանէ գոլով և ծնողքն սրբոյն Հռիփսիմեայ, սան յաւազանէն լեալ սրբոյն Գայիանեայ» (Դաւիթ)*[41] *– «և սան նորին (Գայիանեայ)՝ ի դստերաց ուրումն յաստուածապաշտ և ի թագակալ տոհմէ, զի անուն էր նորա Հռիփսիմէ» (Ագաթ., 138): Գայանեն նույնպես հիշեցնում է իր սան Հռիփսիմեին նրա նախնիների թագավորական ծիրանիները, որոնք ինքը մերժեց հանուն Քրիստոսի թագավորության. «Յիշեա, որդեակ իմ, զի թողեր լքեր զմեծապատիւ շքեղաշուք ոսկիակուռ զաթոռն քո հայրենի, զծիրանեաց թագաւորութեանն, և ցանկացար անանց ճառագայթարձակ լուսոյ թագաւորութեանն Քրիստոսի...» (Ագաթ., 167): Ի տարբերություն ասվածի՝ Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքում սուրբ Հռիփսիմեն կոչված է «հռոմայեցի մի հյուպատոսի դուստր», իսկ Դիոկղետիանոսի նամակում առ Տրդատ՝ «ոմն ազնվական աղջիկ՝ դուստրը հյուպատոսի»*[42]*:*

*դ) Երկու հեղինակների մոտ էլ Հռոմի կայսր Դիոկղետիանոս թագավորը որոշում է աքանչելատեսիլ կույս Հռիփսիմեին արժանացնել* թագուհության *(Դաւիթ) կամ* կին առնել մեծ հարսանիքով *(Ագաթ., 140, 155):*

---

[40] *Ոսկյանները Թադեոս առաքյալի աշակերտներն էին. նրանք նահատակվում են Արտաշատում, Արտաշես թագավորի որդիների ձեռքով մ. թ. 100 կամ 107 թ. քրիստոնեություն քարոզելու համար: Իսկ նրանց աշակերտ Սուքիասյանները՝ Սաթենիկի ազգականները, նահատակվում են Ջրաբաշխ լեռներում՝ Ալանաց երկրից եկած իշխանների ձեռքով (տե՛ս Ք. Տ ե ր - Դ ա վ թ յ ա ն. Հայկական սրբախոսություն, Երևան, 2011, էջ 44–45):*

[41] *Խ ո ր ե ն ա ց ւ ո յ Մատենագրութիւնք, էջ 298:*

[42] G. G a r i t t e. Documents, §31, 39; *Հունարեն Վարք, էջ 165, 166:*

*ե) Խորենացու Հռիփսիմյանց պատմությունից տեսանք, որ Հռոմից գաղտնի փախած կույսերը հասան Եգիպտոս՝ Ալեքսանդրիա և Երուսաղեմում Աստվածածնի ցուցումով գնացին Հայաստան, Արարատյան երկիր՝ «կատարել զընթացս արեամբ»: Սրա մասին որևէ տեղեկություն չեն պահպանել ո՛չ հայերեն Ագաթանգեղոսի Պատմությունը, ո՛չ էլ Ս. Գրիգորի հունարեն և այլալեզու Վարքերը: Միայն Խորենացու մոտ ենք գտնում այդ վկայությունը, որ նա քաղել է Դավիթ Հռովմայեցու լատիներեն կամ հունարեն «Եկլեսիաստէս» գրքից: Դա պետք է բացատրել նրանով, որ ավելի ուշ, մի խմբագիր, պատշաճ չհամարելով այդքան անմեղ կույսերի «արյունալի կոտորածը» կապել Մարիամ Աստվածածնի հետ, դուրս է ձգել տեքստից «Եգիպտոս – Ալեքսանդրիա – Երուսաղեմ» հատվածը և կույսերին Հռոմից միանգամից բերում է Հայոց երկիր՝ Արարատյան աշխարհ: Հենց այս «Հռոմայեցվոց քաղաք – Հայոց երկիր – Արարատյան աշխարհ» ընթացուղու կրկնությունը հաստատում է, որ այդ խմբագիրը տեսել և համառոտել է նույն Դավիթ Հռովմայեցու պատմածը. «Եւ յետ այսորիկ սուրբն Գայիանէ սանականաւն Հռիփսիմեաւ և պարկեշտաժողով ընկերօքն հանդերձ՝ դէմ եդեալ տարաղէմ գնացեալ փախստեայ լինէին (բաց է թողած՝ «ի Հռովմայ» –* Ա. Մ.*), զի զանձինս իւրեանց սրբութեամբ պահեսցեն յայսմիկ հողաթաւալ, մեղսաթաթաւ, մեղանչական անօրէն ի դիւական խառնից մարդկան… Յայնմ ժամանակի զային հասանէին յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կոչեն, ի նիստս թագաւորացն Հայոց: Այնուհետև եկեալ մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ. և կերակրէին ընչիւք իւրեանց ի վաճառաց քաղաքին. և ոչ ինչ այլ ինչ գոյր թոշակ ընդ նոսա զոր ունէին, բայց մի ոմն ի նոցանէ ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս, և տալ զինս ընդ կերակրոյ աւուրն պարենի ռոճկի» (Ագաթ., □149 և 150) :*

*Պարզվում է, որ Սահակ Պարթևն ինքն է հայերեն Ագաթանգեղոսում դուրս թողել կույսերի արյունալի վախճանը Աստվածածնին վերագրող հատվածը: Դրա փոխարեն, Վաղարշապատում երկնքից եկած որոտը, որ Քրիստոսի ձայնն է՝ ազդարարում է. «Զօրացարու՛ք, պինդ կացէք, քաջալերեցարու՛ք, զի ես ընդ ձեզ եմ, և պահեցի զձեզ յամենայն ճանապարհս ձեր, և ածի զձեզ պահեալս անարատութեամբ, և հասուցի զձեզ մինչև ի տեղիս յայս, զի և աստ փառաւորեսցի անուն իմ առաջի հեթանոսաց կողմանց հիւսիսականաց» (Ագաթ., □175), և ոչ մի խոսք նախատակության մասին: Նույնը գտնում եմ Ժ.Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքում. «Բազում (ավելի քան յոթանասուն –* Ա. Մ.*) այլ (կույսեր) բոլորը աղոթելուց հետո, գիշերով փախուստի դիմեցին և հռոմայեցվոց քաղաքից դուրս գալով նավարկեցին և հասան փռյուգիացվոց երկիրը, այնտեղից էլ հայոց երկիրը և հասան Այրարատ աշխարհը, ուր և հաստատվեցին, իրենց աշխատանքով հոգալով իրենց ապրուստը»[43]: Հռիփսիմյան կույսերը, ըստ Դավիթ Հռովմայեցու, ոտք են դնում Հայաստան Դարանաղի գավառից,*

[43] G. G a r i t t e. Documents, *§34; Հունարեն Վարք, էջ 166:*

թերևս, այդ նկատի ունի հունարեն Վարքի խմբագիրը՝ նրանց նավը հասցնելով մինչև Փոյուգիա:

գ) Դավիթ Հռովմայեցու հաղորդմամբ՝ Հռոմից գաղտնի փախած և Հայաստան եկած Հռիփսիմյան կույսերի սկզբնական թիվն է ավելի քան յոթանասուն, որոնցից մի մասը մնաց Հայաստանի տարբեր գավառներում. «Աւելի քան զեօթանասուն հոգի զսրբոցն ասէ պատմագիրս ելեալ ընդ նոսա 'ի հռովմայեցւոց քաղաքէն, որք բնակեցան 'ի տեղիս տեղիս»[44]: Հայերեն Ագաթանգեղոսի Ա գրքում նույնպես երկու անգամ (□199 և 209) հիշված է, որ Հռիփսիմյան կույսերի թիվը «ավելի քան յոթանասուն» էր, որոնցից միայն երեսունյոթն են հասնում Վաղարշապատ և նահատակվում. «Իսկ էին և այլ սուրբք, արք և կանայք, որ ընդ նոսա եկեալ էին, աւելի քան զեօթանասուն մարդ. այլ որ ի ժամուն անդ հասին ի տեղին յայն ի նոցանէն, որ խնդրէին ամփոփել և թաղել զմարմինս նոցա, յորոց վերայ սուր եղեալ կոտորեցին իբրև երեսուն և երկու* ոգիս» (Ագաթ., □199) – «Արդ՝ որք միանգամ եկեալ էին ընդ նոսա անտուստ ի Հռոմոց աշխարհէն, որ միանգամ միաբանք եկին հասին յերկիր Հայաստան աշխարհիս՝ աւելի էին քան զեօթանասուն մարդ: Իսկ որ սպանան ընդ սուրբ տիկնայսն, ընդ Գայիանեայ և ընդ Հռիփսիմեայ, նոքիմբք հանդերձ որ թուեցան ի թիւ վկայելոցն՝ ընդ ամենայն սպանեալսն երեսուն և եօթն մարդ» (Ագաթ., □209): Հռիփսիմյան կույսերի ավելի քան յոթանասուն թվաքանակով հայերեն Ագաթանգեղոսն ուղղակի կապվում է Դավիթ Հռովմայեցու «Եկլեսիաստէս» գրքի հետ, քանի որ Ս.Գրիգորի մյուս հունարեն և այլալեզու Վարքերում այդ թիվն այլևս չի հանդիպում:

Այս տեղեկությունները, որ Խորենացին Դավիթ Հռովմայեցու գրքից քաղելով՝ օգտագործել է «Պատմութիւն սրբոց Հռիփսիմեանց» մեջ, և որոնք, դրանից անկախ, նույնությամբ առկա են նաև հայերեն Ագաթանգեղոսում, գալիս են հաստատելու, որ Սահակ Պարթևը ևս V դ. սկզբին և ավելի վաղ ծանոթ է եղել «Եկլեսիաստէս» գրքին և ինքն էլ դրանից թարգմանաբար անհրաժեշտ դրվագներ է զետեղել «Ագաթանգեղեայ Պատմութեան» մեջ: Դա է հաստատում նաև այն իրողությունը, որ նշված վկայությունները չեն հանդիպում այլևս Գրիգոր Լուսավորչի հունարեն և այլալեզու մյուս Վարքերում:

Անտարակույս, Սահակ Պարթևն ինքն է հանձնարարել 437–438 թվերին իր դպիր պատանի Մովսեսին Ալեքսանդրիա ուղարկելիս՝ վերադարձին կանգ առնել Անտիկեում և Աթենքի գրադարանում գտնել Դավիթ Հռովմայեցու «Եկլեսիաստէս» գիրքը, դրանից արտագրել ժամանակին իր չօգտագործած գլուխներն ու հատվածները և հետը բերել Հայաստան՝ թարգմանելու: Բայց Մովսեսը դրանց անդրադարձել է շատ ուշ, ծեր հասակում, երբ արդեն ավարտում էր «Պատմութիւն Հայոց»-ը և, դիմելով իր մեկենաս Սահակ Բագրատունի մարզպանին, գրում է այս խորիմաստ խոսքերը. «Զի և ես այր եմ ծերացեալ և հիւանդոտ և անպարապ ի թարգմանութեանց, և զերագելն միայն խոկացի... զի և քո կամքդ կատարեսցին,

44 Խ ո ր ե ն ա ց ւ ո յ Մատենագրութիւնք, էջ 300:

*և ես ճողոպրեցայց ի քոց հարկեցուցանող բանից և աղաչանաց»*[45]*: Եվ նույն այդ ժամանակ Դավիթ Հռովմայեցու գրքից Հռիփսիմյանց պատմությունը թարգմանելիս՝ իր ծանուցման մեջ հարևնման գրել է.* «Զի ես մահկանացու գոլով, ծեր և հիւանդոտ, երկուցեալ ոչ հրեշտակ գոլով, կամ որդի բարձրելոյ, որպես աստուածային ասէ *բան...»*[46]*:*

*Բերված զուգադրումներից ակնհայտ է դառնում, որ Դավիթ Հռովմայեցու «Եկլեսիաստէս» գիրքն է եղել այն հունարեն սկզբնաղբյուրը, որ, ստեղծված լինելով IV դ. առաջին կեսին, իբրև արժեքավոր և վստահելի Մատյան Հայոց գրերի գյուտից (405 թ.) հետո անմիջապես թարգմանվել է հայերեն Սահակ Պարթև կաթողիկոսի և նրա մերձավոր հունաբան աշակերտների ձեռքով և հիմք է ծառայել իր՝ Սահակ Պարթևի շարադրած «Ագաթանգեղեայ Պատմութեան» համար: Երկու բնորոշ վկայություն ևս երևան են հանում հայերեն Ագաթանգեղոսի և Դավիթ Հռովմայեցու «Ագաթանգեղեայ Պատմութեան» սերտ աղերսը.*

*ա) հայերեն Ագաթանգեղոսի Պատմության մեջ Սուրբ Գրիգորը Բագավանում սահմանեց Հովհաննես Մկրտչի և Աթանագինես վկայի տոնը, որոնց նշխարները բերել էր Կեսարիայից. «Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց (Գրիգորիոս) ի տօն մեծ հռչակել… Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու և սրբոյ վկային Աստուծոյ Աթանագինէի՝ յայնմ աւուր խմբեալ ի նմին յաւանին տօնեսցեն» (Ագաթ., □836): Միայն Ժ. Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքն է տեղեկություն տալիս, որ Հովհաննես Մկրտչի նշխարները Գրիգորը խնդրել և ստացել էր Ղևոնդիոս արքեպիսկոպոսից Կեսարիայում քահանա ձեռնադրվելուց հետո, որպիսի վկայություն չունի հայերեն Ագաթանգեղոսը. «Արքեպիսկոպոս սուրբ Ղևոնդիոսը Սուրբ Գրիգորի խնդրանոք տվեց սուրբ Կարապետ և Մկրտիչ Հովհաննեսի մասունքներից, ինչպես նաև պատասխան նամակ և մյուս եպիսկոպոսների հետ համբուրեց նրան» (Հունարեն Վարք, 147): Հունարեն Վարքի այս տեղեկությունը հնագույն շերտերից է և, անկասկած, պատկանում է Դավիթ Հռովմայեցուն:*

*բ) Ագաթանգեղոսի Պատմությունը տեղեկություն է տալիս Մեծ Հայքի գավառներում Հայ եկեղեցուն հատկացված հողերի մասին՝ Տրդատ թագավորն իր իշխանության մեջ առհասարակ նշանակեց «չորս չորս հողս երդոյ» բոլոր ագարակ տեղերում, իսկ ավաններում՝ «եօթն եօթն հողս երդոյ» ի ծառայություն սպասավորության քահանաների, որպես նվեր պտղի՝ Տիրոջը մատուցելու համար: Այս մասին հնագույն վկայությունը գտնում եմ Ժ. Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքում, որը ներկայացնում է, թերևս, հողաբաժանման սկզբնական վիճակը Հայաստանում, երբ եկեղեցու սպասավորները տեղերում դեռ սակավաթիվ էին և այս պատճառով Տրդատ թագավորը մեծ գյուղին (այսինքն՝ ավանին) հատկացնում է «հինգ հող երդոյ», իսկ փոքր գյուղին (այսինքն՝ ագարակին)՝*

---

[45] *Խոր. Գ, ԿԵ, էջ 353 [«Որովհետև ես էլ մի մարդ եմ ծերացած և հիվանդոտ և թարգմանություններից անպարապ. ես միտքս դրի միայն շտապել… որպեսզի քո կամքը կատարված լինի, և ես ազատվեմ քո ստիպողական խոսքերից և աղաչանքներից». Մովսես Խորենացի. Պատմություն Հայոց, թարգմանությունը, ներածությունը և ծանոթագրությունները Ստ. Մալխասյանցի, Երևան, 1968, էջ 312]:*

[46] *Խորենացւոյ Մատենագրութիւնք, էջ 297:*

*«երեք հող երրոյ»: Ըստ երևույթին, հունարեն Վարքն արտացոլում է Դավիթ Հռովմայեցու ավելի հարազատ բնագիրը, քան հայերեն Ագաթանգեղոսը, այս պատճառով էլ Սահակ Պարթևի «Կանոնական Սահմանադրությունը» «Բ երդ (երկու երդ) աւելի առցէ, թէ գեաւղ մեծ իցէ» կանոնով միանգամայն համապատասխանում է հենց հունարեն Վարքի տվյալներին:*

*Նշված բոլոր տվյալները մեկտեղելով՝ գալիս ենք աներկբա հետևության. ոչ թե ենթադրյալ «ոմն Ագաթանգեղոսը», այլ Դավիթ Հռովմայեցին է Տրդատ թագավորի ժամանակագիր քարտուղարը: Այսպես, զարմանալի կերպով իրար են հանդիպում «Եկլեսիաստէս» գրքի հեղինակը և «Ագաթանգեղեայ Պատմութեան» Առաջաբանում հիշված հռոմեացի նշանագիր «ոմն Ագաթանգեղոսը», և ոչ միայն հանդիպում, այլև նույնանում են մեկ անձի մեջ, որ է Դավիթ Հռովմայեցին: Հայերեն «Ագաթանգեղեայ Պատմութեան» հեղինակ Սահակ Պարթևը, անտարակույս, այս Դավիթ Հռովմայեցուն է նկատի ունեցել Առաջաբանում (Ագաթ., □12)՝ ներկայացնելով նրա ինքնակենսագրական տվյալները, որոնք քաղել է, բնականաբար, «Եկլեսիաստէս» գրքից, որին պատկանում է նաև Առաջաբանի բավական ընդարձակ նկարագրությունը ծովային հեռավոր և արկածալից նավարկություն կատարող և «խոսքի վաճառականությամբ» տարված[47] նավաստիների մասին: Նշանակում է՝ հայերեն Ագաթանգեղոսի Առաջաբանում մենք գործ ունենք «Եկլեսիաստէս» գրքի հեղինակ Դավիթ Հռովմայեցու հետ, որն իր գրքում պատմել է Հայոց Տրդատ թագավորի հրավերով Հռոմից Հայաստան գալու և Արշակունյաց դռանը արքունի ժամանակագիր-քարտուղար նշանակվելու հանգամանքները. «Արդ՝ հրաման հասեալ առ իս [Դաւիթ], որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, և վարժեալ հայրենի արուեստի, Հռոմայերէն և Յունարէն ուսեալ դպրութիւն, և ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց. և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ, յամս քաջի և առաքինւոյն, ուժեղ և պատերազմողն Տրդատայ…» (Ագաթ., 12): Այստեղից հետևում է, որ ինքը՝ Դավիթ Հռովմայեցին է Տրդատի ժամանակագիր քարտուղարը, որ ծննդով կամ բնակությամբ Մեծ Հռոմ[48] քաղաքից է, և վարժված լինելով հայրենի արվեստով՝ ուսանել է հռոմայերեն[49] (լատիներեն) և հունարեն դպրություն, բավական տեղյակ է նաև* նշանագրերի *գործին՝ գրչության՝ արվեստին,*

[47] *Ագաթ., 7 («անկեալ ի վաճառականութիւն բանից»):*

[48] *«Մեծ Հռոմ» ասելով՝ Դավիթը նկատի ունի ավագ կամ հին Հռոմը Իտալիայում, որն այդպես կոչվեց ի տարբերություն Նոր Հռոմ կոչված Բյուզանդիոնի (Կոստանդնուպոլիս): Մոտ 325 թվին Կոստանդիանոս Մեծ կայսրը Նոր Հռոմ վերանվանեց իր հիմնած Բյուզանդիոն նոր քաղաքը և Հռոմեական կայսրության մայրաքաղաքը փոխադրեց այստեղ: Իտալիայի մայրաքաղաքը Մեծ Հռոմ է կոչված նաև Ժ.Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքի 174 և 188 պարբերություններում, որտեղ և Կոստանդին կայսրը հյուրընկալեց Մեծ Հայքի թագավոր Տրդատին և վկա ու քահանայապետ Գրիգորին: Մեծ Հռոմ անունը ենթադրել է տալիս, որ նույն ժամանակ գոյություն է ունեցել նաև Կրտսեր կամ Նոր Հռոմ կոչված Բյուզանդիոնը և որ հեղինակն իր երկը շարադրել է այդ շրջանում: Մեծ Հռոմ անվանումով հայերեն Ագաթանգեղոսի Առաջաբանն ուղղակի ձայնակցում է հունարեն Վարքի վերջամասին և այս կարևոր անվանումով ևս հունարեն նորահայտ Վարքն աղերսվում է Դավիթ Հռովմայեցու սկզբնաղբյուրի հետ:*

[49] *Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս ի կրկնագիր բնագիրը ի Հ. Գրիգորիս Վարդապետէ Գալէմքեարեան.– «Յուշարձան». գրական ժողովածոյ, Վիեննա, 1911, էջ 70–160: Այստեղ «հռոմայերէն»-ի դիմաց կրկնագիրն ունի «հոռոմայերէն» (էջ 80):*

*որի տակ պետք է հասկանալ, վայելչագրություն, սղագրություն, արագագրություն – այն, ինչ Փավստոս Բուզանդը հունարեն բառերով անվանում է «սեմիարք նոտարաց(ի)»[50]:*

*Գալով «վարժեալ հայրենի արուեստիւ» խոսքին, որ նշված է առաջին տեղում ու նախորդում է հռոմայերեն և հունարեն ուսմանը, ըստ իս՝ դրանով Դավիթ Հռովմայեցին նկատի ունի իր իսկ* հայրենի արվեստը*, որ տարբեր է հռոմեացու և հույնի լեզվից ու ազգությունից, այսինքն՝ Դավիթ Հռովմեացին հայազգի անձնավորություն է, որ լատին և հույն դպրություն ուսանելուց առաջ պատշաճ տիրապետում էր հայերենին, հայկական մշակույթին ու հայրենագիտությանը՝ պատմություն, աշխարհագրություն և այլն: Սրանց շնորհիվ էլ նա Հռոմից հրավիրվել է Տրդատ Մեծ արքայի հրամանով և նշանակվել «ի ձեռնարկութենէ (ի ձեռնարկութեան –* Ա. Մ.*) նշանագիր ժամանակագրացն» (Ագաթ., □13): Այս Դավիթ Հռովմայեցուն հանդիպում ենք նաև Ագաթանգեղոսի Պատմության բուն շարադրանքում* որպես նշանագիր*, նա ներկա է Երեզավանում Գրիգորի կրած կտտանքներին, երբ արագագիր դպիրները («ատենակալ դպիրքն նշանագրացն») (Ագաթ., 99) սղագրում են նրա յոթնօրյա (հունարենում չիք՝* յոթնօրյա*) աղոթքը[51], ներկա է Վաղարշապատից դուրս հնձանների մոտ Հռիփսիմյան կույսերին շրջապատող հեթանոս ամբոխի սանձարձակ, ցանկասեր ցույցերին՝ արքունի սպասավորների մեջ, որոնք եկել էին Հռիփսիմեին ոսկեպատ գահավորակով արքունիք տանելու՝ «կնութեան թագաւորին Տրդատայ և Հայոց տիկնութեան» (Ագաթ., 173): Եվ երբ երկնքից ահավոր որոտմունք լսվեց և խուճապահար ամբոխի մեջ շատերը կոտորվեցին երիվարների սմբակների ու մարդկանց ոտքերի տակ, այնժամ «դիպեցան անդ նշանագիրք, որ գրեցին զամենայն բանս, և ընթերցան առաջի թագաւորին» (Ագաթ., 176): Այս Դավիթ Հռովմայեցին ներկա է և ապարանքում՝ այն սենյակի նախասրահում, որտեղ Տրդատ թագավորը հսկայի ուժով ապարդյուն ցանկանում էր տիրել մանկամարդ Հռիփսիմեին, իսկ կույսերի սնուցիչ Գայանեն հռոմայեցվոց բարբառով սենյակի դռնից հորդորում էր իր սան Հռիփսիմեին անձնատուր չլինել Տրդատ թագավորին. կային այնտեղ ոմանք արքունի սպասավորներից, որոնք լսում և հասկանում էին նրա խրատները «հռոմայեցվոց բարբառով» (Ագաթ., 189):*

## ՀՈՒՆԱՐԵՆ ԲՆԱԳՐԻ ՆՇՄԱՐՆԵՐ ՀԱՅԵՐԵՆ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍՈՒՄ

*Բացի վերոհիշյալ փաստերից, որ մեզ մատակարարում է Մովսես Խորենացու բացահայտած Դավիթ Հռովմայեցու Մատյանը, IV դարում գոյություն ունեցած հունարեն նախաբնագրի օգտին լուրջ տվյալներ է ընձեռում ամենից առաջ բուն հայերեն Ագաթանգեղոսի Պատմությունը, տվյալներ, որոնք բացորոշ հույն իրականության արգասիք են, և պահպանել են հունարեն*

---

[50] *Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Դ, Ե, էջ 138 («Սեմիար» – նշանագիր, «նոտար» – արագագիր, սղագրիչ. «Եւ գրէին զայս սեմիարք նոտարացն արքային (Վաղեսի), որք կային առաջի թագաւորին»):*

[51] G. G a r i t t e. Documents, §16, p. 26 (ταχυγράφοι – *բառացի՝ «արագագիրները»); Հունարեն Վարք, էջ 164:*

*բնագրի հետքերն ու նշմարները. ա) հեղինակը սքողված առաջնորդվում է հունա-հռոմեական կաղանդով՝ փոխանակ հայկական օրացույցի, բ) տեղանունների և անձնանունների հունարեն թարգմանության նմուշներ ու իմաստային բացահայտումներ, գ) շարադրանքում կրկնվող հատվածների թարգմանության մեջ տեղ գտած շեղումներ՝ արտահայտված տարբեր հոմանիշներով կամ նոր մեկնաբանումով:*

*Ասվածը հաստատելու համար՝ բերենք օրինակներ.*

*ա) հայերեն Ագաթանգեղոսում ուղղակի կամ անուղղակի պահպանվել են տեղեկություններ այն մասին, որ IV դ. սկզբի հունարեն Ագաթանգեղոսի Պատմությունը ևս բովանդակել է Հայոց թագավոր Խոսրով Մեծի վեպը, նրա տասնմեկամյա հաղթական արշավանքները Սասանի որդի Արտաշրի դեմ, ապա և նրա սպանությունը Արտաշրի դավադրությամբ՝ Պարթև Անակի[52] ձեռքով: Դա երևում է ոչ միայն նրանից, որ այդ մասին Դավիթ Հռովմայեցին վկայում է առաջին դեմքով Ագաթանգեղոսի Առաջաբանում. «Արդ՝ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ... պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին Խոսրովու, և որ ինչ գործք գործեալք քաջութեան մարտից պատերազմացն, ընդ շրջշրջումն տէրութեանն փոխելոյ ընդ կոյս հարկանելոյ, և ազգաց խռովելոյ. և կամ վասն մահուանն քաջին Խոսրովու, թէ ուստի՞ և կամ զիա՞րդ և կամ ո՞րպէս, և կամ զի՞նչ անցք անցին» (Ագաթ., □13):*

*Այս հավաստիացումը Խոսրով արքայի սխրանքները պատմելու մասին կարող էր նաև հայերեն Ագաթանգեղոսի հեղինակի խոստումը լինել, բայց ոչ հունարեն աղբյուրի: Ուստի, այս վկայությունը մեծ արժեք է ձեռք բերում, երբ բացահայտում ենք, որ հունարեն բնագրի թարգմանության հետ հայերեն Ագաթանգեղոսի Պատմության մեջ աննկատ հայտնվել են նաև հունա-հռոմեական կաղանդը և տոմարը:*

*Ագաթանգեղոսի Պատմության Ա գրքից տեղեկանում ենք, որ Հայոց Խոսրով Մեծ թագավորը Պարթև Արտավան թագավորի սպանության համար տասնմեկ տարի շարունակ վրեժխնդիր էր լինում Սասանի որդի Արտաշրից՝ Պարսից երկիրն ասպատակելով և ավերելով: Այս կապակցությամբ պատմիչը հաղորդում է առաջին հայացքից աչքի չզարնող ժամանակագրական տվյալներ, որոնց վրա ուշադրություն ենք հրավիրել 1998 թ. ԳԱԱ «Հայաստանը և Քրիստոնյա Արևելքը» միջազգային գիտաժողովում ունեցածս ելույթում: Նա գրում է. «Արդ՝ ի միւս ևս ի գլուխ տարւոյն սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօր բովանդակել... ասպատակ դնել ի կողմանս Պարսից, արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիզբոնի» (Ագաթ., 19): Անսպասելի պարզվում է, որ, «ի գլուխ տարւոյն» (տարվա սկզբին) ասելով, Ագաթանգեղոսի հեղինակը նկատի ունի ոչ թե հայոց Նոր տարին՝ Նավասարդը կամ պարսկական Նոր Տարին՝ Ֆրավարդինը, որոնք երկուսն էլ համընկնում էին հռոմեական օրացույցի օգոստոս ամսին (այն է՝ ամռան վերջին ամսին), այլ գարնան սկիզբը, ինչպես մի այլ արշավանքի առիթով պատկերավոր*

[52] *Պահլավերեն-պարսկերեն-հայերեն-ռուսերեն-անգլերեն բառարան. կազմեց Ռ. Աբրահամյանը, Երևան, 1965, էջ 18 («Անակ» պահլավերենում բառացի նշանակում է «չարագործ»):*

*հաղորդում է պատմիչը. «Իսկ իբրև եկին հասին աւուրք ջերոտ հարաւահողմն գարուն դրանցն բանալոյ՝ համբարձաւ թագաւորն ի կողմանցն յայնցանէ. եկին իջին յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք. և մինչդեռ ուրախութեամբ հանգուցեալ էին, ի միտ արկեալ թագաւորին՝ գումարտակ առնէր՝ անդրէն արշաւել ի կողմանս Պարսից» (Ագաթ., 31): Հունահռոմեական Նոր տարին սկսվում էր գարնան առաջին ամսի՝ մարտի 21-ի օրհավասարից, և այստեղ հունարեն նախաբնագրից է սպրդել Ագաթանգեղոսի Պատմության մեջ:*

*բ) Որոշակի իմաստ արտահայտող հայկական տեղանունները հունարեն Վարքի հեղինակը ներկայացրել է թարգմանաբար, որոնք հետո հայերեն Ագաթանգեղոսում ետ են թարգմանվել հայերեն՝ դրա հետևանքով տեքստում երբեմն հանդիպում են անսովոր տեղանուններ: Այդպիսիք են Դրունք Փոսից և Սոյզն կոչված վայրերը: Հայոց Խոսրով Մեծ թագավորին դավադրությամբ սպանել տալով Պարթև Անակի ձեռքով՝ Արտաշիրը գրավեց Հայոց երկիրը և նրա հրամանով «Վիհս փոսացուցեալ՝ սահմանս հաստատէին, և տեղւոյն անուն եդեալ Դրունս Փոսից, առ տեղեաւն որում Սոյզն կոչէին» (Ագաթ., □36): Բնիկ հայկական Փոսադուռն տեղանունը, որը Պրոկոպիոս Կեսարացու մոտ պահպանվել է գրեթե անփոփոխ Գերմանոսի Ֆուսատոն[53] ձևով, Ս.Գրիգորի Վարքը հունարեն շարադրող հեղինակը IV դարում թարգմանել է բառացի՝ «Փոսերի դռներ», իսկ այստեղից էլ Ագաթանգեղոսի մեջ հայերեն ետ թարգմանվելով՝ դարձել է Դրունք Փոսից: Ըստ Ս. Տ. Երեմյանի՝ Փոսադուռն լեռնանցքը գտնվում էր Կարինից դեպի Կողոնիա տանող ճանապարհին՝ Գայլ գետի ակունքների մոտ[54]:*

*Հունարեն նախաբնագիրը կրկին երևան է գալիս այն ժամանակ, երբ Ագաթանգեղոսի Ա գրքում ակնարկվում է* Հռիփսիմէ *անվան իմաստը – ըստ գերմանացի արևելագետ Ալֆրեդ ֆոն Գուտշմիդի՝* Ριπτειν *(ընկնել, նետվել)[55], իսկ ըստ Հր. Աճառյանի՝* Ριπτω, Ριψω *(նետել, գցել) բայից[56]՝ «մանաւանդ դու,* Հռիփսիմէ, *ըստ անուանդ քում արդարև* ընկեցեալ *եղեր... ի մահուանէ ի կեանս» (Ագաթ., 175): Ա. Գուտշմիդը, որի սրամիտ, հաճախ նաև սուր դիտարկումները հարստացրին ագաթանգեղագիտությունը, մատնանշում է, թե այս բառախաղը ենթադրել է տալիս հունարեն ինչ-որ աղբյուր: Այժմ պարզվում է, որ դա Դավիթ Հռովմայեցու «Եկլեսիաստէս» գիրքն է՝ իր Հռիփսիմյանց վկայաբանությամբ:*

*Ի դեպ, աշխարհագրական անունների թարգմանության դեպքերը հազվադեպ չեն նաև Փավստոս Բուզանդի Հայոց Պատմության մեջ: Շատ հայտնի Տավրոս լեռը այստեղ ներկայացվում է* Ցուլ *կամ* Ցլու գլուխ[57] *անունով՝ ըստ Տավրոս (հուն.* Ταυροζ*) բառի նշանակության:*

*գ) Միջբնագրային (ինտերտեքստուալ) քննությունը ևս թույլ է տալիս մեզ բացահայտել այն հունարեն աղբյուրը, որ իր առջև ունեցել է Սահակ*

---

[53] *Պրոկոպիոս Կեսարացի. թարգմանությունը բնագրից, առաջաբանը և ծանոթագրությունները Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 195, ծան. էջ 342:*

[54] *Ս. Տ. Երեմյան. Հայաստանը ըստ Աշխարհացույցի, Երևան, 1963, էջ 88:*

[55] A. von Gutschmid. Agathangelos. Leipzig, 1877, S. 35.

[56] *Հր. Աճառյան. Անձնանունների բառարան, հ. Գ, Երևան, 1946, էջ 100–101:*

[57] *Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց, Գ, Է, էջ 30, Ը, էջ 32, ԺԴ, էջ 62:*

*Պարթևը: Հայերեն և հունարեն Ագաթանգեղոսի Պատմության երկու հեղինակներին՝ Սահակ Պարթևին և Դավիթ Հռովմայեցուն բաժանում է մի ամբողջ հարյուրամյակ՝ զանազան աղանդների դեմ ընդհանրական եկեղեցու բուռն պայքարով անցած IV դ.: Հիմք ընդունելով գրերի գյուտից անմիջապես հետո հունարենից թարգմանված «Ագաթանգեղեայ Պատմութիւն»-ը՝ Սահակ Պարթևը հայերեն Ագաթանգեղոսը շարադրելիս ստիպված էր հաճախ դրսևորել ներհակ վերաբերմունք նախորդ դարասկզբի հեղինակի դավանաբանական ըմբռնումների հանդեպ, որոնք V դ. սկզբին կարող էին դիտվել իբրև շեղում եկեղեցու պաշտոնական դավանանքից, ինչպես, օրինակ, Հռոմից փախած սուրբ կույսերի արյունալի վախճանը Հայաստանում՝ Աստվածածնին վերագրելու միտումը, որ իր շարադրանքից դուրս է նետել Սահակ Պարթևը: Այլ դեպքերում նա անհամաձայնություն է հայտնում հունարեն բնագրի այս ու այն դրույթների ու ձևակերպումների դեմ: Հայերեն Ագաթանգեղոսի հեղինակն անհնար է համարում սոսկ աղոթքով աստվածային պատուհասից դիվահարների խեղված կերպարանքի բուժումը: Բանավիճելով ինչ-որ անհայտ մեկի հետ՝ իր խոսքը հաստատելու համար նա յուրովի է մեկնաբանում Խոր Վիրապի բանտից հենց նոր ելած Գրիգորի առաջին աղոթքը. «Իսկ երանելի Գրիգորը աղոթքի կանգնելով՝ առաջին անգամ խնդրում էր ամենապարգև Աստծուց* ոչ թե դիվահարների կերպարանքին առողջություն*», այլ «միայն մտքի զգաստություն և Աստծո ասած պատգամներն ընկալելու ունակություն –* միայն այսչափ բժշկություն ստացան*» (Ագաթ., 729):*

*Ու՞մ հետ է բանավիճում Սահակ Պարթևը. պարզվում է՝ նրա խոսքն ուղղված է իր առջև դրված հունարեն Վարքին, ավելի ստույգ՝ դրա հեղինակ Դավիթ Հռովմայեցուն, որի գրվածքում անասնակերպ Տրդատ թագավորը սոսկ աղոթքով է արժանանում բժշկության և «ստանում իր նախկին կերպարանքը»[58]՝ առանց իր մեղքը քավելու և իր իսկ հրամանով նահատակված սուրբ կույսերի համար վկայարաններ շինելու: Ուստի և, հակադրվելով հունարեն Վարքին, Սահակ Պարթևն իր շարադրած հայերեն Ագաթանգեղոսում Տրդատի բուժումը խոզակերպությունից կապում է միայն երեք վկայարանների շինության և ավարտի հետ, երբ դրանցում ամփոփվեցին սուրբ կույսերի մարմինները: Միայն այդ ժամանակ* Սուրբ Գրիգորի աղոթքով Քրիստոս բացեց իր ամենակար բժշկարանը, և խոզակերպ Տրդատ թագավորը *«ստացավ իր նախկին մարդկային կերպարանքը» (Ագաթ., 773): Հենց այս պարբերությունն էլ հայերեն Ագաթանգեղոսից մուծվել է թարգմանաբար Ժ. Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքի մեջ (89)[59]: Դա ապացուցվում է նրանով, որ հունարեն Վարքում Տրդատ թագավորը երկու անգամ է «ստանում իր նախկին մարդկային կերպարանքը»՝ 67- ում և 89-ում՝ մի անգամ աղոթքով, մի անգամ էլ մեղքը քավելով: 89-րդ պարբերությունն ավելացնողը մոռացել է 67-ում ջնջել այդ արտահայտությունը:*

---

[58] G. G a r i t t e. Documents, §67; *Հունարեն Վարք, էջ 169:*

[59] *Նույն տեղում, էջ 170:*

ՀՈՒՆԱՐԵՆ ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

*Բացի Ագաթանգեղոսի տեքստից բխող վկայություններից՝ Ս. Գրիգորի IV դարում գոյություն ունեցած հունարեն Վարքի օգտին կարևոր տեղեկություններ, այլև ընդարձակ ավանդություններ են պահպանվել ոչ միայն IV դ. Հայաստանում ապրած, հայկական հողի վրա գործած նշանավոր եկեղեցականների թողած հիշատակարաններում (Դավիթ Հոռվմայեցի, Զենոբ Գլակ, Արտիթես եպիսկոպոս), որոնք շատ մոտ են կանգնած Ս. Գրիգորի ժամանակաշրջանին, այլև օտարազգի հեղինակների երկերում (Գրիգոր Նազիանզացի, Հովհան Ոսկեբերան, Սոզոմենոս և այլք):*

*Հայ մատենագրության մեջ Կոստանդնուպոլսի եպիսկոպոսապետ Հովհան Ոսկեբերանի անունով ավանդված է երկու ներբողական ճառ՝ ընդարձակ և համառոտ: Մեծանուն եպիսկոպոսապետը Կ.Պոլսի պատրիարքական Աթոռից վտարվել է Բյուզանդիայի Եվդոքսիա կայսրուհու նենգամիտ սադրանքով և 404 թ. վերջին աքսորվել Փոքր Հայք: Այստեղ էլ՝ Հայոց Կուկուսոն (տպագրված է Կոկիսոն) քաղաքում, հայազգի եպիսկոպոսի խնդրանքով, մեծ բազմության առաջ նա հանդես է եկել «Ներբողեան ասացեալ յաղագս վարուց և նահատակութեան սրբոյն Գրիգորի Հայոց Մեծաց հայրապետի» ճառով՝ Արևելյան աշխարհի Սուրբ Լուսավորչի մեծահռչակ տոնի հիշատակի օրվա առթիվ, ինչպես ասված է վերտառության մեջ: Ըստ Հիշատակարանի[60]՝ Ներբողյանը հայերեն է թարգմանվել հունարենից Հայոց ՇՂ (590, այն է՝ 1141) թվականին՝ Աբրահամ Գրամատիկոսի ձեռքով հին և եղծ օրինակներից, իսկ թարգմանությունը Դպրության բառուբանի հետ համեմատել[61] է Ներսես Շնորհալին իր եղբոր՝ Գրիգորիս Հայոց կաթողիկոսի հրամանով: Ոսկեբերանի այս Ներբողյանը շատ էական զուգահեռներ ունի հայերեն Ագաթանգեղոսի Ա և Գ գրքերի բովանդակության հետ, և եթե հաջողվեր հաստատել նրա վավերական լինելը, ապա Ագաթանգեղոսի հետ կապված շատ առեղծվածներ միանգամից լուծված կլինեին, քանի որ Ոսկեբերանը, դատելով Ներբողյանի նյութից, ընթերցել է Գրիգոր Լուսավորչի հունարեն ամբողջական Վարքը՝ Հռիփսիմյանց վկայաբանությամբ հանդերձ:*

*Ներբողյանի վավերականության օգտին են խոսում, մեր կարծիքով, այն ինքնակենսագրական տվյալները, որ տեղ են գտել դրա շարադրանքում: Ընդարձակ Ներբողյանում Ոսկեբերանը մի քանի անգամ հիշատակում է Կ.Պոլսի պատրիարքի Աթոռից իրեն օրկենդանության բռնի վտարելու*

[60] *Սոփերք Հայկականք, հ. Դ, Վենետիկ, 1853, էջ 86–87 («Յիշատակարան՝ ի թուականիս ՇՂ թարգմանեցաւ ճառս ի յունականեն ի մերս, ի ձեռն Աբրահամու Ղռամատիկոսի ի հին և յեղծ օրինակաց. իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից՝ յիմոյ նուաստութեան Ներսիսի հրամանաւ տեառն իմոյ և հարազատի Գրիգորիսի Հայոց Կաթողիկոսի: Արդ որք ընթեռնուք կամ ընդօրինակէք յիշեսջիք զվերոյ գրեալ աշխատաւորսդ ի սմա ըստ իւրաքանչիւր անուան ի Քրիստոս Յիսուս. և զսակաւ զայս յիշատակի բան գրեսջիք յիւրաքնչիւր փոխարկութեան. զի և դուք գրեալ լիջիք ի կենդանի տախտակն Քրիստոսի անջնջելի յիշատակաւ»):*

[61] *«իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից» արտահայտությունից հետևում է, որ Աբրահամ Գրամատիկոսի թարգմանությունը համեմատվել և ճշտվել է մատենագրական աղբյուրների, այն է՝ «Ագաթանգեղոսի Պատմության» և Սուրբ Գրքի վկայություններով:*

*և աքսորելու մասին, ու նրա անկեղծ վրդովմունքը որևէ կասկած չի հարուցում: Նա դառնությամբ նշավակում է, առանց անունը տալու,* այն հոգով շնացողին, *որ հափշտակեց իր աթոռը՝ «զի զպատգամս Աստուծոյ մեք իսկ խօսիմք, որ զաստիճան քահանայութեան ունիմք, և զիա՞րդ ոչ իցէ շուն յայտնապէս, այն որ հակառակ իրաւանցն Աստուծոյ շարժեաց զլեզու իւր և շնացաւ ոչ ըստ մարմնոյ, այլ ըստ հոգւոյ, քանզի կենդանութեամբ իմով զաթոռ իմ յափշտակեաց, բայց մեկ յառաջիկայն երթիցուք»*[62]*:*

*Նաև մեր օրերի հովիվներին է պարսավում Ոսկեբերանն իր Ներբողյանում. «Արդ՝ լուարուք, հովիւք, և մի՛ զանձեք ձեզ զգանձս յերկրի: Արծաթ ձեր բազմացաւ և բանն նուազեցաւ, գոյք ձեր աճեցին և համարձակութիւն լռեաց, անբանիցն հօյլք բազմացան և բանաւոր ձեր հօտքն զիջատեցան, յաղագս որոց համարս տալոց էք հովուապետին Քրիստոսի»*[63]*: Մի այլ անգամ էլ Ոսկեբերանը Ս. Գրիգորի պարկեշտության օրինակով դատապարտում է* վերակացութեան աթոռին *հանդգնելու ագահությունը և միաժամանակ վերստին հիշեցնում իրենց հավաքվելու առիթը. «Մի՛ ագահութեան աղագաւ յանդգնաբար ժպրհիք* յաթոռ վերակացութեան. *օրինակ ձեզ կալջիք զերանելի հայրս մեր, զորոյ աստանօր հաւաքեալ կատարեմք զյիշատակ»*[64]*: Մի երրորդ անգամ էլ ներբողասացը, թեև Դավթի Սաղմոսի խոսքերով զանգատվում է իր՝ վտարանդու ճակատագրից. «Կոխեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ և զմոխիր որպէս հաց կերայ և պանդուխտ եմ ես և նժդեհ»*[65]*, ապա և հիշեցնում է բազմավիշտ հովքի չարչարանքները. «որպէս զի կարասցուկ թերեւս առ նորայն նախանձու և զմերս թեթև նեղութիւն համբերութեամբ տանել»:*

*Ներբողյանում եղած Ոսկեբերանի այս ինքնակենսագրական վկայությունները բավական լուրջ հիմք են ծառայում պնդելու, որ գործ ունենք վավերական աղբյուրի հետ, այսինքն, որ այն, իրոք, պատկանում է Հովհան Ոսկեբերանի գրչին: Իսկ դա նշանակում է, որ 404 թ. նրա ձեռքի տակ իսկապես եղել է հունարեն Ս.Գրիգորի մի Վարք, որի հիման վրա նա շարադրել է իր ներբողական Ճառը: Եվ վերջապես, ունենք մի չափազանց կարևոր փաստ, որը վերջնականապես փարատում է Ոսկեբերանի «Ի Գրիգոր Լուսաւորիչ» Ներբողյանի վավերական լինելու վերաբերյալ ամեն մի կասկած: Հայերեն Ագաթանգեղոսից տեղեկանում ենք, որ միայն Ս.Գրիգորի վաթսունվեց օր տևած Վարդապետությունից հետո և Վաղարշապատում նախատակված սուրբ կույսերի երեք վկայարանները շինելու ժամանակ է երանելի Գրիգորը Աստծուն աղոթելով բոլոր հավաքվածների ու Տրդատ թագավորի համար բժշկություն հայցում, և Քրիստոսի շնորհով թափվում են թագավորի ձեռքերի ու ոտքերի կճղակները (Ագաթ., 764): Մինչդեռ հունարեն Վարքում Խոր Վիրապից նոր դուրս եկած Գրիգորին, որը դեռ չգիտեր, թե որտեղ են նախատակված կույսերի նշխարները, հեթանոս ամբոխը խնդրում է բժշկել իրենց և կենդանակերպ թագավորին:*

[62] *Սոփերք Հայկականք, հ. Դ, էջ 53–54:*
[63] *Նույն տեղում, էջ 58:*
[64] *Նույն տեղում, էջ 59:*
[65] *Նույն տեղում, էջ 65:*

*Եվ առաջին աղոթքով Գրիգորը բժշկում է դիվահար նախարարներին*[66]*, որից հետո բժշկում է Տրդատ թագավորին խոզակերպությունից: Եվ այս բժշկությունը տեղի է ունենում նախքան Տրդատի ու նրա մեծամեծների ձեռքով նահատակված Հռիփսիմյան կույսերի համար վկայարաններ կառուցելը և սուրբ կույսերի նշխարներն ամփոփելը: Տեսանք, որ այս կետում էական հակասություն կա հունարեն Վարքի և հայերեն Ագաթանգեղոսի միջև: Եվ այստեղ բացահայտվում է մեզ համար շատ կարևոր մի իրողություն. Հովհան Ոսկեբերանն իր Ներբողյանում դիվահար Հայոց թագավորի և նախարարների բուժման հարցում բառացի հետևել է այստեղ վկայակոչված հունարեն Վարքին՝ գրելով. «Եւ նայեցեալ տէր յաղաչանս սրբոյն (Գրիգորի), շնորհեաց ամենեցուն առժամայն* զբուժումն ի դիւական ախտիցն*, և զմարդկապէսն մտաւորութիւն և զխօսս թագաւորին, և եկեալ (Գրիգոր) վաղվաղակի նոքօք հանդերձ, խնդրէր տեսանել զնշխարս վկայիցն Աստուծոյ»*[67]*: Որից հետո թե՛ Ոսկեբերանի Ներբողյանը և թե՛ հունարեն Վարքը մի անգամ ևս միանման կրկնում են Տրդատ թագավորի մարդակերպ դառնալու բժշկությունը՝*

Ներբողյան. *«Քանզի (Տէրն) բառնայր վաղվաղակի* ի ձեռն աղօթից նորա *(Գրիգորիոսի) հարուածք պատուհասին յամենեցուն, և կնքելով զթագաւորն այրն Աստուծոյ նշանաւ խաչին, թօթափէր նոյն ժամայն զգեստ խաւարային,* մերկանայր և զկերպարանս անասնեղէն, *զոր զգեցաւ յաղագս մեղացն դատապարտեալ, և զգենոյր զառաջին կերպարանացն զվայելչութիւն»*[68]*:*

Հունարեն Վարք. *«Բոլորը արցունք էին թափում սրբի ոտքերին և խնդրում բուժել թագավորին, որ գետնին էր գտնվում՝ կերպարանափոխված և անասնակերպ:* Սուրբն աղոթեց նաև թագավորի համար *և բոլորին բուժեց, ազատելով նրանց խայտառակ պատուհասից.* իսկ (թագավորն) ստացավ իր նախկին կերպարանքը*»*[69]*:*

*Այս վերջին փաստով ոչ միայն բացահայտվում է Հովհան Ոսկեբերանի «Ի Գրիգոր Լուսաւորիչ» Ներբողյանի IV դարում գոյություն ունեցած հունարեն աղբյուրը, այլև ի դերև են ելնում մերօրյա բոլոր այն հետազոտողների կասկածները, որոնք պարապ եզրակացությամբ Հովհան Ոսկեբերանի Ներբողյանը համարում էին հայերեն Ագաթանգեղոսից հետագայում ստեղծված և Ոսկեբերանին վերագրված անվստահելի շարադրանք: Վերջին օրինակը ցույց է տալիս, որ Ոսկեբերանի Ներբողյանի համար հիմք ծառայած հունարեն սկզբնաղբյուրը զգալի տարբերություն է ունեցել մեր ներկա Ագաթանգեղոսից. նրանում բացակայել է Գրիգոր Լուսավորչի Վարդապետությունը, որովհետև դրա բովանդակության մասին Ոսկեբերանը խոսում է ենթադրաբար՝ «թերևս» բառով. «թերևս ծանուցանէր զանեղութիւնն (տպ. անմեղութիւն.–* Ա. Մ.*) Աստուծոյ և զարարածոց ամենայն զեղելութիւն, զգոյացութիւն մարդոյն...»*[70]*:*

---

[66] G. G a r i t t e. Documents, §63; *Հունարեն Վարք, էջ 168:*

[67] *Ոսկեբերան, Ներբողյան, էջ 34:*

[68] *Սոփերք Հայկականք, հ. Դ, էջ 37:*

[69] G. G a r i t t e. Documents, §67; *Հունարեն Վարք, էջ 169:*

[70] *Սոփերք Հայկականք, հ. Դ, էջ 34–35:*

*Դատելով ըստ ամենայնի՝ IV դարում հունարեն Վարքում չի եղել նաև Գրիգոր Լուսավորչի գիշերային տեսիլքը, որն առկա է Ժ.Գարիտի հրատարակած հունարեն Վարքում*[71]*: Դա երևում է այն բանից, որ տեսիլքին նախորդող՝ «Բայց այժմ դադարեցնենք այստեղ վարդապետությունն այդ մասին և շտապենք կույսերի սուրբ մարմինները թաղելու և աղոթարաններ կառուցելու» նախադասությանը հաջորդում է անմիջապես «նրանք շտապեցին թաղել սուրբ կույսերին» նախադասությունը, որոնք անսպասելի ընդմիջված են Գրիգոր Լուսավորչի պատմած երկարաշունչ տեսիլքով: Այստեղից կարելի է եզրակացնել, որ V դարից հետո Ս.Գրիգորի գիշերային տեսիլքը հայերեն Ագաթանգեղոսից է թարգմանաբար ներառվել նախնական հունարեն Վարքի մեջ: Դրանով պետք է բացատրել, որ հայերեն Ագաթանգեղոսի նորաքաղաք Վաղարշապատի փոխարեն հունարեն Վարքում գիշերային տեսիլքը տեղի է ունենում Արտաշատ քաղաքում, քանի որ, սկսած Պլուտարքոսից, «նորաքաղաք» (Կաինոպոլիս) ասելով, հույն մատենագիրները հասկանում էին միայն Հայոց հին մայրաքաղաք Արտաշատը: Այդ տեսիլքը չի եղել նաև Հովհան Ոսկեբերանի ձեռքի տակ եղած Ս.Գրիգորի հունարեն Վարքում, քանզի Ներբողյանում որևէ ակնարկ չկա այդ շատ կարևոր դեպքի մասին, որտեղ նկարագրվում է Աստծու Որդու իջնելը Հայոց մայրաքաղաքում: Իսկ այսպիսի երևույթին չէր կարող անտարբեր վերաբերել Գրիգոր Լուսավորչին փառաբանող Կ.Պոլսի եպիսկոպոսապետը:*

*Ըստ Ոսկեբերանի, քահանայապետ ձեռնադրվելիս Գրիգորիոսի վրա իջել է աղավնակերպ Սուրբ Հոգին, որ նույնպես չկա հայերեն Ագաթանգեղոսում (տե՛ս □805). «Քանզի երանելին հայրն մեր և մեծ խոստովանողն Գրիգորիոս յետ պայծառագոյն յայտնութեանն որ ի վերուստ, հաւանեալ լինէր տէրունական հրամանին, երթայր այնուհետև ընդունել զձեռնադրութիւն քահանայապետութեանն, որ և անդանօր նշան մեծագոյն, եթէ ո ոք էր Գրիգորիոս, ցուցանէր Աստուած որպէս զի Հոգին Սուրբ աղաւնակերպ տեսլեամբ յայտնէր ի վերայ նորա հանգչելով, և այնքան մեծավայելուչ պատուով դառնայր սքանչելի քահանայապետն Աստուծոյ յայցելութիւն նորատունկ ժողովրդեան իւրոյ»*[72]*:*

*V դ. առաջին կեսի բյուզանդական եկեղեցական պատմագիր Հերմիաս Սոզոմենոսը՝ Թեոդոս Փոքր կայսեր (405–450) ժամանակակիցը, իր «Եկեղեցական պատմության» մեջ (ավարտված՝ 439 թվին) պատմելով այն մասին՝ «թե ինչպես հայերն ու պարսիկներն ընդունեցին քրիստոնեական կրոնը», Հայաստանում նոր հավատի տարածման պատճառը համարում է Տրդատ թագավորի հետ կատարված մի ինչ-որ հրաշք. «Այնուհետև, սակայն, քրիստոնյաների կրոնը, առաջադիմելով դեպի սահմանակից ազգերը,– գրում է հույն եկեղեցական պատմագիրը,– չափազանց շատ բազմություններ ներգրավեց, իսկ ինչ վերաբերում է հայերին, ապա ես տեղեկացա (comperi), որ նրանք արդեն վաղուց ի վեր, քան վրացիներն ու ուրիշները դրանից առաջ ընդունել էին Քրիստոսի հավատը: Ասում են, թե հիկապես Տրդատը, որն այս ժողովրդի առաջնորդն էր, մի ինչ-որ աստվածանշան*

[71] G. G a r i t t e. Documents, §77–82; *Հունարեն Վարք, էջ 169–170:*

[72] *Սոփերք Հայկականք, հ. Դ, էջ 67–68:*

*հրաշքի պատճառով, որ նրա տան մեջ պատահել էր, իսկույն դարձել էր ինքը քրիստոնյա ու նաև հրամայել էր, որ քարոզության միջոցով այդ կրոնն ընդունեն բոլոր իր հպատակները»*[73]*: Սոզոմենոսի այս հաղորդումը միանգամայն համերաշխ է 410-ական թթ. ստեղծված Ագաթանգեղոսի Պատմությանը:*

*Ամփոփենք. հայերեն «Ագաթանգեղեայ Պատմութիւն»-ը և Ժ. Գարիտի հայտնաբերած ու հրատարակած հունարեն Վարքը բովանդակությամբ նույն ծավալն ունեն, երկուսն էլ սկսվում են Պարթև Արտավանի սպանությամբ ու ավարտվում Կոստանդին Մեծ կայսեր հրավերով Տրդատ թագավորի Մեծ Հռոմ կատարած այցով՝ նախքան 325 թ. Նիկիո ժողովը, և այնտեղից վերադառնալու եզրափակիչ նկարագրությամբ: Մինչդեռ Հովհան Ոսկեբերանի Ներբողյանն ամփոփում է առանձին դրվագներ հունարեն Վարքից և հիմնականում ջատագովական բնույթ ունի: Քննարկվող հունարեն Վարքը բաղկացած է հին ու նոր շերտերից: Նոր շերտերը մեծագույն մասով այն պարբերությունններն են, որոնք, ըստ իս, Սահակ Պարթևի հրահանգով, հայերեն Ագաթանգեղոսից թարգմանաբար մուծվել են հունարեն Վարքի մեջ՝ իբրև հակաճառություն IV դ. սկզբի հեղինակի առանձին դրվագների դեմ: Մնացյալ հին շերտերով հունարեն Վարքը ներկայացնում է ամբողջապես Դավիթ Հռովմայեցու հունարեն Ագաթանգեղոսի Պատմությունը: Հենց այդ հին շերտերին է վերաբերում հայերեն Ագաթանգեղոսի վերջաբանում Տրդատ թագավորի [Դավիթ] քարտուղարի եզրափակիչ խոսքը, թե նա իր երկը շարադրել է ժամանակագիր մատյանների հունական արվեստի կանոններով. «Իսկ մեք որպէս ընկալաք զհրամանս քոյոյ թագաւորութեանդ, քաջդ արանց Տրդատ, գրել զայս ամենայն՝ որպէս օրէն է ժամանակագիր մատենից՝ ըստ այնմ ձևոյ դրոշմեցաք, ըստ օրինակի յունական ճարտարութեանն արկեալ ի շար զամենայն» (Ագաթ., □892): Բայց քանի որ Սահակը հատկապես խնդիր է ունեցել շեշտելու Սուրբ Գրիգորի Վարդապետությունը և նրա մեծ դերը իբրև Հայոց Լուսավորչի, ուստի ակամա բաց է թողել շատ էական մանրամասներ հունարեն Վարքից: Մինչդեռ վերջինս իր պահպանած հնագույն շերտերով լույս է սփռում հայերեն Ագաթանգեղոսում մութ մնացած պատմական շատ տվյալների վրա: Մեր կատարած ուսումնասիրությամբ հաստատվում է, որ Ժ. Գարիտի հայտնաբերած հունարեն Վարքը՝ իր հին ու նոր շերտերով, ամբողջապես ստեղծվել է հայկական հողի վրա և իբրև այդպիսին ամենից ավելի արժեքավորն է մինչ այժմ ագաթանգեղագիտությանը հայտնի բոլոր Վարքերի մեջ:*

[73] H e r m i a s S o z o m e n u s. Historia Ecclesiastica, lib. II, cap. VIII – Migne, Patrologia Graeca, t. 67, col. 953, 956. *Տե՛ս նաև՝ Հ. Մ ան ա ն դ յ ա ն. Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, h. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 126:*

# «ИСТОРИЯ АГАФАНГЕЛА»: ОБСТОЯТЕЛЬСТВА СОЗДАНИЯ, ВРЕМЯ НАПИСАНИЯ И ВОПРОС О ЛИЧНОСТИ АВТОРА

*АЛЬБЕРТ МУШЕГЯН*

Р е з ю м е

По утверждению целого ряда арменоведов, даже таких маститых как Ст. Малхасянц, образ Григория Просветителя впервые был создан в «Истории Агафангела», написанной на армянском языке якобы в 461–465 гг. В действительности, эта история первоначально была изложена на греческом языке еще в начале IV в. Давидом Римским, секретарем-хронологом армянского происхождения, приглашенным царем Великой Армении Тиридатом III из Рима. «Агафангел» (по-греч. Благовещатель)– это священный титул Григория Просветителя, данный ему Давидом Римским в своей книге на греческом языке «Екклесиастес»– сборник религиозных преданий и мучений, заглавие которого заимствовано из Ветхого Завета и переводится в Армянской Библии *«Գիրք Ժողովողի»*. Под заглавием «История Агафангела» Давид подразумевал «Историю об Агафангеле», т. е. «Историю о Благовещателе Григории».

Вопреки официальной точке зрения, армянская версия «Истории Агафангела» была изложена Католикосом Сааком Партевом в 410-х гг. на основании книги Давида Римского. Однако, в конце V в. армянскими историками «История Агафангела» была истолкована как «История, написанная Агафангелом» и этот священный титул Григория из заглавия очутился в древнем предисловии, в качестве имени секретаря-хронолога Тиридата III. Отсюда появился и миф, будто не Давид Римский, а Некий Агафангел был приглашен из Рима в армянский двор Аршакидов.